Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## Բովանդակություն



ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1988 թվականի նոյեմբերի 28-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց «Պետական շինարարության բնագավառում քաղաքական ռեֆորմի իրականացման միջոցառումների մասին» հարցը: Այդ հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՌՍՖՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Վ. Ի. Վորոտնիկովը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Վ. Շչերբիցկին, ՍՄԿԿ Չեչենա-Ինգուշական մարզկոմի առաջին քարտուղար Վ. Կ. Ֆոտեևը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար Մ. Ս. Մենդիբաևը, Վոլժսկի ՍՍՀՄ 50-ամյակի անվան ավտոմոբիլային գործարանի (Կույբիշևի մարզ) էլեկտրիկների բրիգադավար Վ. Մ. Մալիխինը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսարանի ռեկտոր Ա. Ա. Լոգունովը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ե. Ե. Սոկոլովը, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Վյալյասը, ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Միրոնենկոն, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա.—Ռ. Խ. Վեզիրովը, ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստր Ն. Ս. Կոնարյովը:

Եզրափակման խոսքով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումը քննարկված հարցի առթիվ ընդունեց որոշում:

Պլենումում լսվեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովի զեկուցումը «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման մինչև 2005 թվականն ընկած ժամանակաշրջանի կոնցեպցիայի նախագծի նախապատրաստման աշխատանքի մասին»: Պլենումը այդ հարցի առթիվ ընդունեց որոշում:

Պլենումը հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումի կողմից կազմված՝ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ներքին ու արտաքին քաղաքականության հիմնական ուղղությունների հանձնաժողովների անհատական կազմը:

Պլենումում քննարկվեց կազմակերպական հարց:

Պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամության կազմից դուրս բերեց Ի. Բ. Ուսմանխոջաևին, ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուների կազմից՝ Ի. Ջաբարովին և Ա. Ու. Սալիմովին՝ որպես իրենց վարկաբեկածների:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

# ՊԵՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշում է, որ «ՍՍՀՄ սահմանադրության (հիմնական օրենքի) փոփոխությունների և լրացումների մասին» և «ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների մասին» ՍՍՀՄ օրենքների նախագծերը, որոնք լրամշակվել են՝ հաշվի առնելով դրանց համաժողովրդական քննարկման արդյունքները, համապատասխանում են քաղաքական սիստեմի ռեֆորմի առաջին փուլի խնդիրներին, ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի որոշումներին։ Դրանց ընդունումը կնշանակի խոշոր քայլ սովետական հասարակության դեմոկրատացման, սովետների լիիշխանության ապահովման և սոցիալիստական իրավական պետության ստեղծման ճանապարհին։ Պետական իշխանության բարձրագույն ներկայացուցչական մարմինների կազմավորման կառուցվածքի և կարգի առաջարկվող փոփոխությունները սահմանադրական հիմքեր են ստեղծում օրենսդրական աշխատանքի զգալի բարելավման, պետական գործերի հրապարակային, դեմոկրատական վարման համար, բազմապիսի հասարակական շահերը հաշվի առնելով՝ կարևորագույն հարցերը լուծելու համար, ամրապնդում են իրավական երաշխիքները իշխանության չարաշահման և ավտորիտարիզմի դեմ։ Պայմաններ են ստեղծվում իշխանության բարձրագույն էշելոնի արդյունավետ դեմոկրատական գործունեության համար։*

*Քաղաքացիների, աշխատավորական կոլեկտիվների, հասարակական, գիտական և մյուս կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ անցկացված համաժողովրդական քննարկումը ցույց տվեց, որ սովետական մարդկանց մեծամասնությունը պաշտպանում է քաղաքական սիստեմի առաջարկվող նորացումը, արտացոլեց բնակչության բոլոր խավերի հասարակական ակտիվության աճը։ Քննարկման ընթացքում բազմաթիվ առաջարկություններ ստացվեցին պետական կյանքի արմատական հարցերի վերաբերյալ, որոնք պետք է մանրակրկիտ կերպով ուսումնասիրվեն և օգտագործվեն հետագա օրենսդրական և պրակտիկ գործունեության մեջ։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն պաշտպանում է համաժողովրդական քննարկման արդյունքների հիման վրա օրինագծերում կատարվող ուղղումներն ու ճշգրտումները և ընկ. Մ. Ս. Գորբաչովին հանձնարարում է ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի արտահերթ տասներկուերորդ նստաշրջանում զեկուցումով հանդես գալ առաջարկվող քաղաքական վերափոխումների վերաբերյալ։*

*2. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ընդգծում է ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջիկա ընտրությունների քաղաքական մեծ նշանակությունը, որոնք պետք է ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների համագումարի կազմավորումը ապահովեն ընտրողների կամքի ազատ արտահայտման հիման վրա։*

*Հարկավոր է լիովին իրագործել ակտիվ քաղաքական պրոցեսում միլիոնավոր մարդկանց լայնորեն ներգրավելու ստեղծվող հնարավորությունը։ Արմատական հարցն է դեպուտատական այնպիսի կորպուսի ձևավորումը, որը կարողանա ըստ արժանվույն ներկայացնել իր ընտրողներին և գործուն կերպով պաշտպանել ժողովրդի շահերը վերակառուցման պայմաններում։ Կարևոր է, որ դեպուտատության թեկնածուների մեջ լինեն բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության թվից ավելի շատ ակտիվ կոմունիստներ, կոմերիտականներ և անկուսակցականներ, որոնք կարողանան արտահայտել ինչպես ազգային, տեղական, այնպես էլ համաժողովրդական շահերը, հստակ քաղաքացիական դիրքեր բռնեն, ընդունակ լինեն պետական գործունեության։*

*Պահանջվում է նորովի կազմակերպել ընտրական կամպանիան, լրիվ չափով հաշվի առնել, որ ընտրություններն այս անգամ նման չեն լինի բոլոր նախորդներին, երկրի քաղաքական կյանք է մտնում թեկնածուների իրական մրցակցությունը։ Կամպանիան պետք է անցկացվի սոցիալիստական բարոյականության շրջանակներում, դեպուտատության յուրաքանչյուր թեկնածուի, բոլոր ընտրողների պատվի և արժանապատվության հարգման սկզբունքներով, պետք է դառնա դեմոկրատիայի կուլտուրային տիրապետելու իսկական դպրոց։ Կոչված են ակտիվորեն դրան նպաստելու մասսայական ինֆորմացիայի միջոցները։*

*3. Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է ըստ ամենայնի նպաստել ընտրական պրոցեսի դեմոկրատացմանը։ Հարկավոր է վճռականորեն վերջ դնել կարգադրագրերի պրակտիկային և կազմակերպամոլությանը, զգայուն կերպով անսալ մարդկանց կարծիքներն ու տրամադրությունները, գործել համոզման և օրինակի ուժով։*

*Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, ՍՄԿԿ երկրկոմներին, մարզկոմներին՝ արմատապես բարելավել ագիտացիոն պրոպագանդիստական աշխատանքը։ Բազմակողմանիորեն ու մատչելի ձևով պարզաբանել կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությունը, վերակառուցման ընթացքը, որպեսզի յուրաքանչյուր սովետական մարդ խորապես հասկանա իրադրությունը, իրականացվող տնտեսական ու քաղաքական ռեֆորմների իմաստը։ Պետք է ասել ու պաշտպանել ճշմարտությունը, չխուսափել սուր հարցերից, հմտորեն օգտագործել բացատրական աշխատանքի ակտիվ ձևերը, այդ թվում դիսկուսիաները։ Բնակչության հարաճուն քաղաքական նախաձեռնությունը հաստատակամորեն ուղղել պրակտիկ գործերի հունը, մարդկանց մեջ հաստատել այն ըմբռնումը, որ միայն ընդհանուր ջանքերով, յուրաքանչյուր աշխատատեղում բարձր հատույցով, բոլոր տեղամասերում նորարարական ու պատասխանատու մոտեցումով կարելի է լուծել հասարակական զարգացման հասունացած պրոբլեմները։*

*Այս բեկումնային ժամանակաշրջանում կոմունիստների պարտքն է բարձրացնել իրենց ավանգարդային դերը հասարակության մեջ, գիտակցաբար կատարել ՍՄԿԿ կանոնադրությունից բխող կամովին ստանձնած պարտականությունները, ըստ ամենայնի ուժեղացնել կուսակցական-քաղաքական աշխատանքը։ Դրան պետք է նպաստեն ՍՄԿԿ մարզային ու երկրամասային կազմակերպությունների հաշվետու-ընտրական կոնֆերանսները։*

*Հանձնարարել ՍՄԿԿ Կենտկոմի հանձնաժողովներին՝ նախապատրաստել ՍՍՀՄ ժողովրդական դեպուտատների ընտրությունների կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի դիմում կուսակցությանը, սովետական ժողովրդին, որտեղ պետք է շարադրվեն ՍՄԿԿ-ի նախընտրական պլատֆորմը, նրա ծրագիրը ՍՍՀՄ պետական իշխանության բարձրագույն մարմնի գործունեության ամբողջ առաջիկա ժամանակաշրջանի համար։*

*4. Քաղաքական սիստեմի ռեֆորմի առաջին փուլի խնդիրների իրականացումը պետք է ուղեկցվի դրա առաջիկա ուղղություններում աշխատանքն ուժեղացնելով, սովետական ֆեդերացիայի, տեղերում իշխանության ու կառավարման վերակազմման, լրիվ ծավալով դատաիրավական ռեֆորմի իրականացման հասունացած պրոբլեմների լուծումով։*

*Կուսկազմակերպությունների հետագա աշխատանքում պետք է շատ կարևոր տեղ գրավեն ազգամիջյան հարաբերությունների բնագավառում, տարբեր ազգերի ու ազգությունների ինչպես յուրահատուկ շահերը, այնպես էլ մեծ Հոկտեմբերի ամենակարևոր նվաճման՝ Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամության պահպանման ու ամրապնդման խնդիրները առավել լրիվ հաշվի առնելու բնագավառում կուսակցական կոնֆերանսի հավանությանն արժանացած միջոցառումների անշեղ կենսագործման խնդիրները։ Այդ կապակցությամբ առանձնահատուկ նշանակություն է ստանում ՍՍՀՄ ազգային պետական կառուցվածքի մի քանի սահմանադրական նորմաների*

ճշտման նախապատրաստական աշխատանքը: Դրա համար նույնպես պետք է լինեն միութենական հանրապետությունների և ինքնավար կազմավորումների իրավունքներն ընդլայնելու կուսակցության կուրսը, ՍՍՀ Միության և Հանրա- պետությունների հարաբերությունների ներդաշնակման հիմնադրույթը: Ընդ որում պետք է խստագույնս կիրառվեն սոցիալիստական ֆեդերալիզմի, բոլոր միութենական հանրապետությունների իրավունքների հավասարության, ազգային պատկանելությունից անկախ քաղաքացիների իրավահավասարության սահմանադրական սկզբունքները:

Հանձնարարել ՍՄԿԿ կենտկոմի քաղբյուրոյին, հանձնաժողովներին՝ ակտիվացնել ՍՍՀՄ-ում ազգամիջյան հարաբերությունների կատարելագործման հարցերին նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի նախապատրաստությունը, նկատի ունենալով, որ բոլոր հարցերը ուշադրությամբ քննության առնվեն միութենական և ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի և ինքնավար օկրուգների ներկայացուցիչների մասնակցությամբ:

Քաղաքական ռեֆորմի իրականացման հետ կապված աշխատանքում ելնել այն բանից, որ կարծիքների համակողմանի քննարկման և դրանք հաշվի առնելու հիման վրա, շահերի համաձայնեցման հիման վրա ամեն մի հարցում պետք է ու կարելի է մշակել ամենքին բավարարող որոշում: Այդ գործում տեղ չպետք է գտնեն հապճեպ, միակողմանի գործողությունները, հասարակական կարծիքը ոչ ճիշտ կողմնորոշող քայլերը: Հանձնարարել ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին՝ իրականացնել կոմպլեքսային համաձայնեցված միջոցառումներ վերակառուցման գաղափարներով հասարակական ուժերի համախմբման, առանձին հանրապետություններում տեղ գտած սոցիալական ու քաղաքական լարվածության նվազեցման նպատակով, ապահովել այդ նպատակով ՍՄԿԿ-ի բոլոր կազմակերպությունների գործողությունների միասնությունը:

---

## ՍՄԿԿ կենտկոմի պլենումի որոշումը

## ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԻՆՉԵՎ 2005 ԹՎԱԿԱՆՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻ ԿՈՆՑԵՊՑԻԱՅԻ ՆԱԽԱԳԾԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՍԻՆ

1. Ընդունել ի գիտություն Ն. Ի. Ռիժկովի զեկուցումը «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման մինչև 2005 թվականն ընկած ժամանակաշրջանի կոնցեպցիայի նախագծի նախապատրաստման աշխատանքի մասին»:

2. Հանձնարարել ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին՝ շարունակել կոնցեպցիայի նախագծի մշակման աշխատանքը, ղեկավարվելով հասարակության կյանքի բոլոր կողմերի լայն դեմոկրատացման պայմաններում էկոնոմիկայի արմատական կառուցվածքային վերակազմման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, տնտեսական ռեֆորմի հետևողական խորացման հիման վրա էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի և XIX համամիութենական կուսակցական կոնֆերանսի սկզբունքային որոշումներով:

---



# ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Վ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ վարում է ՍՍՀՄ քաղաքացիների սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական իրավունքների ու ազատությունների ընդլայնման, դրանց ձևերի ու մեթոդների կատարելագործման գիծ: Սոցիալիստական դեմոկրատիայի էությունից են բխում ՍՍՀՄ քաղաքացիների սահմանադրական իրավունքներն ու պարտականությունները, որոնք բնութագրվում են մի ընդհանուր ու միասնական չափանիշով. ինչպես որ քաղաքացու իրավունքներ գոյություն չունեն ու չեն կարող ունենալ առանց նրա պարտականությունների, այնպես էլ չկան պարտականություններ՝ առանց իրավունքների: «... Ազատության, մարդու իրավունքների, անհատի արժանապատվության գաղափարները լցված են ռեալ բովանդակությամբ, ապահովվում է իրավունքների և պարտականությունների միասնությունը, գործում են բարոյականության նույն օրենքներն ու նորմերը, նույն կարգապահությունը բոլորի և յուրաքանչյուրի համար, ավելի ու ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում անհատի համակողմանի զարգացման համար»,— վավերացված է ՍՄԿԿ ծրագրում (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 179):

ՍՍՀՄ պետական համակարգը և սոցիալիստական դեմոկրատիան, որպես մի միասնություն, մի համաձուլվածք, զարգանում են միասնաբար, ներդաշնակորեն, ժողովրդի և կուսակցության շահերին համապատասխան:

Մեր կուսակցությունը վարում է կառավարման, պետական որոշումների մշակման և ընդունման պրոցեսի դեմոկրատացման գիծ: Վերջինիս իրականացման ընթացքում անընդհատ ընդլայնվում է այն հարցերի շրջանակը, որոնց առթիվ որոշումներ կարող են ընդունվել աշխատավորական կոլեկտիվներում, սովետների մշտական հանձնաժողովներում, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններում քննարկվելուց հետո միայն: Բոլոր միջոցառումների, ամեն տեսակ որոշում-բանաձևերի կենտրոնում, սովորեցնում է կուսակցությունը, պետք է կանգնած լինի մարդը: Իսկ առավել կարևորը, նշեց Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարում, մարդու հոգսերով ապրելն ու նրա խոհերին ու մտքերին հաղորդակցվելն է, իսկ սա նշանակում է, որ մեր հասարակությունից, մեր ըմբռնումից պետք է վերանան բյուրոկրատիզմն ու քաշքշուկը, դրանց փոխարինեն հոգատարությունն ու սրտացավությունը, հրապարակայնությունն ու դեմոկրատական նորմերը: Սոցիալիստական հասարակարգի նոր փուլին անցման, հասարակական հարաբերությունների զարգացման արդի պրոցեսը թելադրում է այնպիսի պայմաններ, երբ բացառվում են վարչարարական հրահանգները, անհարկի միջամտությունները: Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման արդի պայմաններում բոլորից շատ և առավելապես առաջնակարգ դերը վերապահվում է հասարակայնությանը, աշխատավորական կոլեկտիվներին: Սոցիալիստական հասարակության հետագա առաջընթացի երաշխիքը նրա ողջ համակարգի, բոլոր օղակների դեմոկրատացումն է, ժողովրդական լայն զանգվածների քաղաքական ու սոցիալական ակտիվության ապահովումը:

---

*ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ՎԼԱԴԻՄԻՐ ԽԱՉԱՏՈՒՐԻ — ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի կենտրոնի ավագ գիտաշխատող, բանասիրական գիտությունների թեկնածու:*

ՍՍՀՄ-ը բազմազգ ժողովուրդների միություն է, ֆեդերատիվ կառուցվածքի պետություն, որտեղ, ի տարբերություն բուրժուական տիպի ֆեդերացիաների, կյանքի, սոցիալական հարաբերությունների, իրավունքների, ազգային շահերի հարցերում բոլորն իրավահավասար են: Մեր երկրի ժողովուրդների ազգային կուլտուրաների աճն ու մերձեցումը, նրանց փոխադարձ կապերի ամրապնդումը հետզհետե ավելի արդյունավետ են դարձնում փոխադարձ հարստացումը, սովետական մարդկանց համար ամենալայն հնարավորություններ բացում հաղորդակցվելու այն արժեքներին, որոնք մեր երկրի ժողովուրդներից յուրաքանչյուրի տաղանդի ծնունդն են:

Սոցիալիստական դեմոկրատիայի մեծագույն երաշխիքներից մեկը մեր երկրի ազգերի և ազգությունների հետագա բարգավաճումն ու մերձեցումն է, ձևով՝ ազգային, բովանդակությամբ՝ սոցիալիստական կուլտուրայի հարստացումը, ՍՍՀՄ ժողովուրդների ազգային ու ինտերնացիոնալ կապերի ամրապնդումը, ազգային լեզուների ազատ ու անկաշկանդ զարգացումը: Իրենց ազգային լեզվի հետ միասին ռուսաց լեզվին տիրապետելը հնարավորություններ է ընձեռում բազմակողմանիորեն հաղորդակցվելու գիտության, տեխնիկայի, հայրենական և համաշխարհային կուլտուրայի նվաճումներին, ընդլայնելու գիտական աշխարհայացքը: Ճիշտ է, սոցիալիստական հասարակարգում ստեղծված են գրեթե բոլոր պայմանները ազգերի և նրանց կուլտուրաների մերձեցման համար, ամուր հիմքերի վրա է դրված ժողովուրդների բարեկամությունը, բայց և այնպես ազգային հարաբերություններում դեռևս կան կնճռոտ ու լուծման կարոտ շատ պրոբլեմներ, որոնք տասնամյակներ շարունակ լռության մատնվելով, շատ տխուր իրավիճակի առաջ են կանգնեցրել մեր ժողովրդին և կուսակցությանը: Այս մտահոգությամբ XIX կուսկոնֆերանսում Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «ազգային հարցերը թակում են մեր տան դուռն ու պատուհանը: Մենք սկսել ենք ուսումնասիրել այդ հարցերը, և դրանք պահանջում են Կենտկոմի պլենումի անցկացում»: Այսօր վերակառուցմանը, հրապարակայնությանը, սոցիալիստական դեմոկրատիային ու ազատ մտածողությանը խանգարում են ազգային հարաբերություններում գոյություն ունեցող և լուծման կարոտ շատ խնդիրներ:

Մեր երկրում հոգևոր կյանքի դեմոկրատական սկզբունքները սերտորեն առնչվում են կուսակցական ու պետական բազմաթիվ ու բազմաբնույթ խնդիրների հետ: Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման և կատարելագործման արդի փուլում սրությամբ է դրվում կառավարման բոլոր օղակների, ինչպես նաև հասարակական կազմակերպությունների գործունեության ակտիվացման, դրանց դերի բարձրացման խնդիրը: Այդ նպատակով, ինչպես նշվեց XIX կուսկոնֆերանսում, անհրաժեշտ է կենտրոնում և միութենական հանրապետություններում վերացնել մինիստրությունների ու գերատեսչությունների, տեղերում կառավարչական ստորաբաժանումների մի մասը: Կառավարման ապարատի նոր սխեմայի համաձայն համապատասխան միութենական գերատեսչությունների ապարատը պետք է կրճատվի 40 տոկոսով, միութենական հանրապետություններում՝ կիսով չափ, իսկ ինքնավար հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում՝ մեկ երրորդով: Կառավարման ապարատը բեռնաթափելու և ավելորդ օղակներից ու հաստիքներից ազատվելու հետ մեկտեղ պետք է այնուհետև գործն այնպես կազմակերպել, որպեսզի նրա ոչ մի օղակ դուրս չմնա դեմոկրատական նորացման պահանջներով ու սկզբունքներով իրականացվող վերակառուցումից:

Գաղտնիք չէ, ինչպես նշվեց XIX կուսկոնֆերանսում, որ «ՍՄԿԿ կառուցվածքի գործունեության հիմքում դրված դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը որոշակի փուլում շատ բանով փոխարինվել էր բյուրոկրատական ցենտրալիզմով»: Դա տեղի էր ունեցել առաջին հերթին այն պատճառով, որ սկզբնական կուսակցական կազմակերպությունները, շարքային կոմունիստները զրկված էին ներգործուն ակտիվությունից ու ձեռներեցությունից: Եվ նաև այն պատճառով, որ խախտվել էին դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները: Մինչդեռ ներկուսակցական դեմոկրատիայի պահանջների համաձայն կուսակցական բոլոր մարմինները, նրանց կադրերը պետք է մշտապես գտնվեն կուսակցական զանգվածների հսկողության ներքո: Կուսակցական աշխատանքի այն օղակներում, ուր չկա նման վերահսկողություն, այնտեղ գլուխ են բարձրացնում բյուրոկրատիզմն ու անարխիան, այն խարամը, որը Վ. Ի. Լենինը համարում էր կուսակցությունը ներսից քայքայող ախտ:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումն ու կատարելագործումը ենթադրում են պայքար անարխիայի ու բյուրոկրատիզմի, լճացման ու տնավճարության, պրոտեկցիոնիզմի ու խնամառուական երևույթների դեմ: Այս ամենի դեմ անզիջում պայքարն ուժեղացնելու նպատակով, XIX կուսկոնֆերանսում նշեց Մ. Ս. Գորբաչո-



վը, «... պետք է լիովին վերածնել սկզբունքայնության, բացախոսության, դիսկուսիաների, քննադատության և ինքնաքննադատության, գիտակցական կարգապահության, կուսակցական ընկերականության և պարտադիր անձնական պատասխանատվության, գործարարության մթնոլորտը կուսակցության մեջ»: Այս բոլորը, անվիճելիորեն, սոցիալիստական դեմոկրատիայի էությունից բխող պահանջներ են, որոնց հետ են կապվում նորացման ու վերակառուցման այնպիսի անհետաձգելի խնդիրներ, ինչպիսիք են իրավական ռեֆորմը, որը նախատեսված է իրականացնել 1989 թ. կեսերին, ինչպես նաև իրավական պետության կազմավորման ուղղությամբ ձեռնարկվող միջոցառումները: Իսկ որո՞նք են դրանց էությունից և դրա անհրաժեշտությունից բխող առանձնահատկությունները: Ամենից առաջ և առավելապես օրենքի գերակայությունը, ամենուր և բոլոր օղակներում օրինականության ապահովումը և իրավակարգի ու իրավապահպան մարմինների գործունեության կատարելագործումը:

Իրավական պետության առանձնահատկություններից մեկն էլ օրենքի պարտադիր լինելն է պետական, սովետական, հասարակական և այլ մարմինների ու կազմակերպությունների, բոլոր քաղաքացիների համար: Սա նշանակում է, որ պետական և իրավական ոչ մի մարմին, պաշտոնատար անձ, կուսակցական և հասարակական ոչ՛ մի կազմակերպություն, բոլոր և ամեն աստիճանի պաշտոնյաներ՝ վերևից մինչև ներքև պետք է ենթարկվեն օրենքին և սրբությամբ պահպանեն օրինականությունը: Թե՛ մեկը, թե՛ մյուսը 30-ական թվականներից սկսած և հատկապես լճացման տարիներին այնքան են խաթարվել ու արատավորվել, առաջ բերելով սովետական մարդկանց օրինական զայրույթը, որ խնդիր դրվեց հեղաշրջել մեր օրենսդրությունը միայն իրավական արմատական ռեֆորմի իրականացման և իրավական պետության կազմավորման ճանապարհով:

Լուրջ վերանայման կարիք ունի նաև կադրային քաղաքականությունը, որի ամենախոցելի կողմը, ինչպես նշվեց 1988 թ. հունիսյան պլենումում և հատկապես XIX կուսկոնֆերանսում, լճացման տարիներին արմատավորված կադրերի, այսպես կոչված, անվանացուցակի պրոբլեմն է, որը հսկայական վնաս բերեց կուսակցական, պետական և տնտեսական ապարատի մի շարք օղակների գործունեությանը՝ պարզապես պատնեշելով այդ բնագավառում լենինյան դեմոկրատական սկզբունքների կիրառումը, որոնց լիարժեք իրականացումը դեռևս լուրջ դժվարություններ է ներկայացնում և հանդիպում որոշ պահպանողական տարրերի դիմադրությանը: Գաղտնիք չէ, որ կադրային քաղաքականության բնագավառում ոչ միայն լրիվ չափով և հետևողականորեն չեն կիրառվում դեմոկրատական սկզբունքները, որի պատճառով էլ մեր հասարակության մեջ դժվարությամբ են իրականացվում քաղաքական սիստեմի արմատական ռեֆորմի և նորացման ուղղությամբ տարվող աշխատանքները, այլև սկզբունքային պայքար չի մղվում այն արատների ու թերությունների դեմ, որոնց վերացումը մեծապես կնպաստի աշխատավորական կոլեկտիվներում ինքնակառավարման զարգացմանը, տվյալ կոլեկտիվի կողմից ցանկացած աստիճանի ղեկավարի ընտրությանը:

Այս ամենից ելնելով՝ XIX կուսկոնֆերանսն առաջ քաշեց հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում մրցակցության շատ կարևոր և սկզբունքային նշանակություն ունեցող հարցը, ըստ որում ընտրվել կարող է ոչ թե այն թեկնածուն, որը մտցված է պաշտոնի համար ռեզերվի մեջ, այլ «ներքևից», կոլեկտիվի կողմից առաջադրվածը: Այս նշանակում է, որ կադրերի առաջ քաշումը պետք է կատարվի ոչ թե ցուցակային կազմի հարկադրվածությամբ, այլ կուսակցական կազմակերպությունների ազատ, կոմունիստների կամքը ոչնչով չսահմանափակող արտոնություններով ու դեմոկրատական սկզբունքներով, ինչպես դա տեղի է ունեցել նաև մեր հանրապետության մի շարք կուսակցական կազմակերպություններում, արտադրական ձեռնարկություններում: Հենց վերջերս այդպես են ընտրվել ՀԿԿ Կիրովականի քաղկոմի, Երևանի Լենինյան, Մյասնիկյանի կուսշրջկոմների առաջին, Սիսիանի և Ապարանի շրջկոմների երկրորդ քարտուղարները, «Արագած» արտադրամիավորման արհկոմի նախագահը և ուրիշներ, որոնց թեկնածությունն առաջադրվել է ոչ թե «վերևից» իջեցված անվանացուցակի համապատասխան, այլ տեղական կազմակերպությունների, կոմունիստների և ողջ ակտիվի կողմից, նրանց առաջադրմամբ: Նույնը կարելի է ասել հանրապետության արդյունաբերական մի շարք խոշոր ձեռնարկությունների, գյուղատնտեսական արտադրության շատ ղեկավարների, բժշկական, Երևանի և Կիրովականի մանկավարժական ինստիտուտների ռեկտորների, բազմաթիվ միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների, պրոֆտեխնիկական ուսումնարանների, միջնակարգ մասսայական դպրոցների դիրեկտոր-

ների ընտրությունների մասին, որոնք տեղի են ունեցել կոլեկտիվների կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ընդհանուր ժողովներում, դրանց մասնակիցների ակտիվության պայմաններում: Այնուհանդերձ, հանրապետությունում կադրային քաղաքականության բնագավառում տարիներ շարունակ արմատավորված արատավոր սկզբունքները, խնամառությունն ու հովանավորչությունը դժվարությամբ են հաղթահարվում, որի մասին լուրջ խոսակցություն տեղի ունեցավ ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում:

ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. Հարությունյանը ասաց, որ «կադրային աշխատանքի վերակառուցումը մեզանում դանդաղ է ընթանում... Ուստի զարմանալի չէ, որ կադրերի հետ կատարվող աշխատանքում դեմոկրատական ձևերը թույլ են արմատավորվում կուսակցության քաղկոմներում ու շրջկոմներում», որոնք բավարարվելով առանձին դեմոկրատական մեթոդների կիրառմամբ, չեն իրականացնում թեկնածությունների՝ լայն կոլեկտիվ մասշտաբներով քվեարկության միանգամայն դեմոկրատական ձևերը: Պլենումը խնդիր դրեց՝ վերջ տալ հանրապետությունում կադրերի «հորիզոնական մեխանիկական տեղափոխության» քաղաքականությանը և սկզբունքորեն առաջնորդվել կադրային ջոկատի զգալի նորացման ու թարմացման, սոցիալական կազմի տեսակետից նրա վերանայման ուղիով: «Այստեղ,— այնուհետև նշեց Ս. Գ. Հարությունյանը,— առաջնահերթ նշանակություն է ստանում կադրային հարցերը լուծելիս լիակատար հրապարակայնության, ընտրովիության և ներքևից եկող լայն վերահսկողության զարգացման մասին XIX կուսկոնֆերանսի հիմնադրույթների իրականացումը»:

Ժամանակն է կադրերի ընտրության և առաջքաշման գործում հրաժարվել հին ստերեոտիպերից, առաջնորդվել նորացման դեմոկրատական սկզբունքներով՝ ոչնչով չկաշկանդելով կոմունիստների, աշխատավորական կոլեկտիվների կամքը և կադրերի ընտրությունն իրականացնել հրապարակայնության պայմաններում: Այս ուղղությամբ մեծ անելիքներ ունեն արհմիութենական կազմակերպությունները: Վերջիններս կոչված են լինելու աշխատավորների դեմոկրատական իրավունքների հուսալի երաշխավորներ, ակտիվորեն ներգործեն նրանց վրա, օգնեն իրականում գործնականորեն դառնալու արտադրության տերեր: Արհմիութենական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների մարտունակությունը, ապահովել նրանց հասարակական ակտիվությունը: Իսկ մասսաները կարող են հասարակության զարգացման պրոցեսներում ընդգրկվել այն դեպքում, երբ դրա համար քաղաքական, տնտեսական և հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում ստեղծվեն անհրաժեշտ նախադրյալներ, դեմոկրատիայի լիակատար մթնոլորտ, ճկուն մեխանիզմներ:

Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման մեխանիզմի ղեկի մոտ առաջին տեղը պատկանում է սովետներին, որոնց գործունեության ակտիվացման նպատակով այսօր նրանց առջև դրվում են լուրջ պահանջներ: Փոխվել են ժամանակները և շարունակվում են փոխվել որակապես, արմատականորեն: Հետևապես, սովետների գործունեության, նրանց աշխատանքի ոճին անհարիր են ղեկավարման հին ձևերը՝ պահպանողականությունից սկսած, հրահանգչական մեթոդներով վերջացրած: Սովետների, նրանց գործկոմների, բաժինների, բոլոր օղակների և աշխատավորական կոլեկտիվների, մասսաների միջև փոխհարաբերությունները պետք է հաստատվեն խստիվ իրավական հիմքի, օրինականությունն անշեղորեն կիրառելու, օրենքները հարգելու դեմոկրատական սկզբունքների վրա: Սակայն շատ հաճախ դա նրանց չի հաջողվում, և հատկապես այն պատճառով, որ նրա ֆունկցիաներին, գործունեությանը խառնվում են այլ օղակների, հատկապես կուսակցական մարմինների աշխատողները: Նման պայմաններում սովետները, որպես ներկայացուցչական մարմիններ, հայտնվում են երկրորդական, նույնիսկ երրորդական դիրքերում: «Եթե մենք ուզում ենք վերածնել սովետները,— XIX կուսակցական կոնֆերանսում նշեց Մ. Ս. Գորբաչովը,— ապա հարկավոր է նախ և առաջ վերածնել այն սովետը, որը ներկայացնում է մարդկանց, նրան տալ համապատասխան իրավունքներ, որ հենց նրա իշխանությունը լինի բոլոր մնացած լիազորությունների աղբյուրը»: Արդ, առաջնակարգ խնդիր է մնում սովետների՝ որպես մեր հասարակության քաղաքական սիստեմի առանցքի, դերի մեծացումն ու բարձրացումը, նրանցում դեմոկրատական սկզբունքները խորապես արմատավորելու պահանջը:

Սովետները պետք է վերակառուցվեն սոցիալիստական դեմոկրատիայի արդի պահանջներին համապատասխան: Վերջինս ենթադրում է ընտրական սիստեմի կատարելագործում, նրա համակարգի զգալի փոփոխություններ, որոնք հասարակու-



թյան լայն խավերի համար պայմաններ են ստեղծում ակտիվորեն մասնակցելու պետական իշխանության բարձրագույն մարմինների ընտրությանը և հնարավորություն ընձեռում սովետների կազմում ընտրելու այնպիսի մարդկանց, որոնք ի վիճակի են ապահովելու դրանց առավել ակտիվ ու նպատակասլաց գործունեությունը: Նույնը վերաբերում է նաև սովետներում մեր բազմազգ երկրի ազգային առանձնահատկությունների հաշվառմանը, կուսակցության և սովետական-պետական մարմինների ֆունկցիաների սահմանազատմանը, հասարակական կազմակերպությունների ակտիվ մասնակցությանը և այլն:

Սոցիալիստական դեմոկրատիայի ու իրավակարգի էությունը և խնդիրները, օրենքի ու օրինականության կատարելագործման, սովետական քաղաքացիների արժանապատվության բարձրացման հարցերը, որոնք, ինչպես նշեց Մ. Ս. Գորբաչովը, ամենից առաջ սահմանադրական և համաժողովրդական պահանջներ են, բխում են սոցիալիստական դեմոկրատիայի էությունից: «Պետք է խստագույնս կիրառվեն արդարադատության, օրենքի առջև քաղաքացիների հավասարության դեմոկրատական սկզբունքները, պետության և յուրաքանչյուր քաղաքացու շահերի պաշտպանությունն ապահովող մյուս երաշխիքները»: Այս տեսակետից կուսակցությունը, որպես սահմանադրական պահանջ, առաջադրեց նոր խնդիր՝ վճռականորեն բարձրացնել դատախազական հսկողության դերը, կատարելագործել դատարանների և դատապաշտպանության աշխատանքը, մոտ ժամանակներս ավարտել քաղաքացու իրավունքներին դիպչող պաշտոնատար անձանց ապօրինի գործողությունները դատարանում գանգատարկելու կարգի մասին օրենքի նախապատրաստումը, որը նախատեսված է սահմանադրությամբ: Ինչպես կուսակցական ու սովետական, այնպես էլ իրավապահպան մարմինների առջև կարևորագույն խնդիր է ծառացած՝ աչալրջորեն և հետևողականորեն իրականացնել աշխատանքի և սպառման չափերի ներդաշնակության, աշխատավարձի՝ ըստ աշխատանքի արտադրողականության ու որակի հատուցման սկըզբունքը, որը բխում է «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալական արդարացի պահանջից:

Այսօր սոցիալիստական դեմոկրատիան հետամուտ է մի կարևոր խնդրի՝ արմատախիլ անել բյուրոկրատիզմը, կամայականությունը, հավասարարությունը, հովանավորչությունը և սոցիալիզմին խորթ բոլոր այն երևույթները, որոնցից մեր հասարակությունը վերջին տասնամյակների ընթացքում բավականաչափ տուժել է: Սոցիալիզմի ժամանակակից փուլում ուղիներ ու հեռանկարներ են բացվում՝ շուտափույթ լուծելու տնտեսական ու սոցիալական մի շարք բարդ պրոբլեմներ, ամրապնդելու կարգապահությունը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և մարդկային գործոնի դերը, այս ամենի հետ նաև դեմոկրատիայի լենինյան նորմերի վերականգնումը:

Ինչպես 1988 թ. փետրվարյան պլենումում շեշտեց Մ. Ս. Գորբաչովը, «Մեր տընտեսական ռեֆորմը, դեմոկրատացման և հրապարակայնության պրոցեսների զարգացումը, հոգևոր-բարոյական ոլորտի նորացումը, այսինքն՝ այն ամենը, ինչը մենք կապում ենք հեղափոխական վերակառուցման հասկացության հետ, միևնույն շղթայի օղակներն են»: Այդ շղթայի օղակների միասնությունը հենց վերակառուցման իրականացման ամենավճռական միջոցն է, որը համապատասխանում է սոցիալիզմի լենինյան կոնցեպցիայի բուն էությանը: Դա հնարավորություն է ընձեռում, որպեսզի մեր հասարակությունը հասնի այն իդեալներին, հանուն որոնց կատարվեց Հոկտեմբերյան հեղափոխությունը: Անժխտելի է, որ միայն ողջ հասարակության դեմոկրատացման միջոցով կարելի է իրականացնել խոր վերափոխումներ, կառավարման և ինքնակառավարման ձևերի ու միջոցների կատարելագործում, վերջ դնել խորապես արմատացած անտարբերությանը և հուժկու ազդակ հաղորդել աշխատավորների սոցիալ-քաղաքական ակտիվությանը: Միայն հասարակության բոլոր գործերին հենց նրանց շահագրգիռ և գիտակցական մասնակցության միջոցով է հնարավոր սոցիալիզմի հումանիստական նպատակների իրականացումը:

Չի կարելի անտեսել այն փաստը, որ հատկապես 30-ական թվականներից սկսած մինչև վերջերս ինչպիսի մեծ կորուստներ է կրել սոցիալիստական դեմոկրատիան, ինչպիսի աղավաղումների ու խեղաթյուրումների ենթարկվել: Այժմ այն մեծ դժվարությամբ, սակայն հետևողականորեն ճանապարհ է հարթում դեպի լենինյան գաղափարները, դեպի մեր հասարակության խոր դեմոկրատացման ուղին: Այդ ճանապարհին նա տակավին հանդիպում է խոչընդոտների, քարացած ըմբռնումների, պահպանողական դատողությունների, որոնցից դեռևս չեն ձերբազատվել նույնիսկ կուսակցական ու սովետական որոշ ղեկավար աշխատողներ:

Արդի պայմաններում սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ նրա սահմաններն օրեցօր ընդլայնվում են՝ ընդգրկելով մեր կյանքի բոլոր ոլորտները, քանի որ այդ են թելադրում սոցիալիզմի, ժողովրդի շահերը: Այսօր դեմոկրատիայի սահմաններն ընդլայնվում են էկոնոմիկայում, գիտության բնագավառում, քաղաքական կյանքում, ամենուր: Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման այսօրվա պայմաններն ու պահանջները, իրոք, թելադրում են բազում խնդիրներ՝ կուսակցական և պետական ապարատի վերակառուցումից ու կուսակցության շարքերն անարժաններից մաքրելու անհրաժեշտությունից սկսած, սոցիալ-տնտեսական մեծ մասշտաբի վերակառուցմամբ ու դեմոկրատական վերափոխումներով վերջացրած: Այս ամենի (և ոչ միայն սրանց) մեծագույն երաշխիքը, որպես սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման չափազանց կենսունակ պահանջ, մարդկանց հոգեբանության վերակառուցումն է: Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման պահանջներից են բխում նաև այնպիսի պրոբլեմներ, ինչպիսիք են անձնական և հասարակական շահերի միասնությունն ու ներդաշնակությունը, մասսաների նախաձեռնությունը, անհատի գործունեության ազատությունը, նրա ստեղծագործական կարողությունների ազատ ու անկաշկանդ զարգացումն ու կատարելագործումը, ղեկավար աշխատողներին քննադատաբար վերաբերվելու հնարավորությունը և այլն:

Սոցիալիստական դեմոկրատիան այսօր մարդկանց սովորեցնում է մտածել այլ կերպ, քան նախկինում, մտածել նորովի, հետևել ժամանակի սրընթաց հնքին, լինել նախաձեռնող: Սա նշանակում է, որ մեր կյանքի բոլոր վերափոխումների ու վերակառուցման հիմքում պետք է դրվի մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը և ոչ թե վերևից իջեցվող հրահանգները: Այս իմաստով առաջնահերթ խնդիրը լճացման տարիներից մեզ ժառանգություն մնացած պասսիվության, իներտության, անտրտունջ հնազանդության և անպատասխանատվության հաղթահարումն է:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման և կատարելագործման պահանջը միևնույն ժամանակ խնդիր է դնում հիմնավորապես վերակառուցել մեր հասարակության քաղաքական սիստեմը, կուսակցական և պետական ապարատի մի շարք օղակներ, գերագույն սովետի և նրա տեղական մարմինների աշխատանքը: Հարկ կլինի նաև իրականացնել սոցիալիստական իրավական պետության ստեղծումը, որն էլ իր հերթին կթելադրի դատաիրավական ռեֆորմի, իրավապահպան մարմինների նոր կառուցվածքի ստեղծման անհրաժեշտությունը: Հարկ է առավել չափով բարձրացնել հասարակության և հասարակական կազմակերպությունների դերը, անհատի դերը, գնահատել և ըստ ամենայնի արժեքավորել նրա ստեղծագործական նախաձեռնությունները, դատապարտել սովետական քաղաքացու արժանապատվությունը ոտնահարողներին, բյուրոկրատներին ու տակավին անհատի պաշտամունքի հովերով ղեկավարություն իրականացնողներին:

Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը պահանջում է ապավինել ճշմարտությանը, պայքար մղել կեղծիքի ու ստորամտության դեմ. «Եթե մենք լռելյայն հանդուրժենք այդ կեղծիքը,— գրել է Վ. Ի. Լենինը,— ապա էլ ինչ դեմոկրատներ ենք մենք... Այդպիսի բաներ հանդուրժելով՝ մենք պղծնկացնում ենք դեմոկրատիզմը» (**ԵԼԺ, հ. 34, էջ 182**):

Վ. Ի. Լենինը սոցիալիստական դեմոկրատիան դիտում էր որպես կենդանի ու առողջ օրգանիզմ, իսկ նրա անընդհատ կատարելագործումն ու զարգացումը՝ որպես պատմադիալեկտիկական օրինաչափություն:

Նոր կենսունակություն է ձեռք բերում սոցիալիստական դեմոկրատիայի այն պահանջը, թե հասարակության ու պետության գործերի կառավարումը կատարելագործելու պրոբլեմները բացահայտելիս անհրաժեշտ է ավելի լայնորեն ցուցադրել աշխատավորական կոլեկտիվների՝ որպես անմիջական, ուղղակի դեմոկրատիայի սկզբնական բջջի, հնարավորությունները: Սոցիալիստական կարգերը հաջողությամբ են զարգանում լոկ այն ժամանակ, երբ ժողովուրդն ինքն է ռեալ կերպով կառավարում իր գործերը, երբ միլիոնավոր մարդիկ են մասնակցում քաղաքական կյանքին: Հենց դա է աշխատավորների ինքնակառավարումը՝ դրա լենինյան ըմբռնմամբ, դա է կազմում սովետական իշխանության էությունը: Ինքնակառավարման հիմունքները զարգանում են ոչ թե մեր պետականությունից դուրս, այլ նրա ներսում՝ ավելի ու ավելի խոր ներթափանցելով պետական ու հասարակական կյանքի բոլոր բջիջները, հարստացնելով դեմոկրատական ցենտրալիզմի բովանդակությունը, ամրապնդելով նրա սոցիալիստական բնույթը: Ինքնակառավարումը սովորեցնում է նաև պետական կառավարման, աշխատանքային կոլեկտիվների ղեկավարման հմտություններ, կատարելագործում դրանց մեթոդներն ու սկզբունքները: ՍՍՀՄ պետական և հասարակական մարմինների կառուցվածքի, նրանց աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործումը ենթադրում է սովետական յուրաքանչյուր քաղաքացու ակտիվ մասնակցությունը պետական գործերին, նրա վերաբերմունքը պետական որոշումներն ու նախագծերը մշակելիս:

Սովետական մարդու սոցիալական դերի բարձրացումը, կենսադիրքորոշման ակտիվացումը հատկապես ցայտուն է ուրվագծվում մեր քաղաքական սիստեմի ու սոցիալիստական դեմոկրատիայի համակարգում: Այստեղ դարձյալ կարևոր նշանակություն են ձեռք բերում սովետները, նրանց գործունեությունը: Սովետների դեպուտատների և հասարակական լայն ակտիվի քաղաքական ու սոցիալական փորձը, կրթվածության, կուլտուրայի, պրոֆեսիոնալ որակավորվածության մակարդակը, նշել է Մ. Ս. Գորբաչովը, երաշխավորում են նրանց կողմից ամենաբազմազան պրոբլեմների ձեռնհաս լուծումը: Սովետների և հասարակական կազմակերպությունների համակարգի այդ մեծ զանգվածի, այդ հսկայական ուժի եռանդին ու նախաձեռնությանը անհրաժեշտ է ճիշտ նպատակամղվածություն, շիտակ կողմնորոշում տալ: Հարկավոր է սովետների տեսադաշտում ընդգրկվեն համապետական ու տեղական կյանքի բոլոր հանգուցային հարցերը: Պետք է, որ աշխատավորներն իմանան, թե ինչպես է աշխատում իրենց սովետը, թե նա ինչպես է կատարում ընտրողների պատվիրանները, պաշտպանում շահերը:

Մեր երկրում կուսակցությունն ու պետությունը, դատարանն ու միլիցիան, վերահսկողությունն ու սովետական-հասարակական այլ կազմակերպություններ ժողովրդական են: Համաժողովրդական, հետևապես և դեմոկրատական են ընտրությունները ու դեպուտատին հետ կանչելու իրավունքը, առաջարկությունների առաջադրումը, քննադատության ու ինքնաքննադատության հրապարակայնությունը և այլն: Այս ամենը բխում են մեր կուսակցության ներդեմոկրատական պահանջներից, նրա կանոնադրական սկզբունքներից: Իսկ դրանք, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, անհրաժեշտ է է՛լ ավելի ընդարձակել և անթերի իրականացնել: Սովետական մարդկանց աշխատանքային և սոցիալական ակտիվության բարձրացումը, կարգապահության ամրապնդումը կյանքի են կոչվում ոչ թե լոկ խոսքերով ու ինքնահաշվետու զեկուցումներով, այլ գործնական միջոցառումներով: Սոցիալիստական դեմոկրատիայի դրսևորումներից են աշխատավորական կոլեկտիվների և պետական ձեռնարկությունների (միավորման) մասին օրենքները: Այդ ակտերը սովետական դեմոկրատիայի, սոցիալիստական ինքնավարության կարևոր գործոններն են:

Մեր հասարակության մեջ շատ են լավ օրենքները, սակայն դրանց ուժն ու կենսունակությունը նրա ճիշտ ու անթերի կիրարկման մեջ է: Օրենքի կիրառման շրջանակներում ադմինիստրացիայի գործունեության վրա պետք է լուրջ և ամենօրյա հսկողություն իրականացնեն կուսակցական կազմակերպություններն ու արհմիութենական կոմիտեները՝ հանախակի լսելով դիրեկցիայի հաշվետվությունը: Աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացումը, կոլեկտիվի մասին օրենքի անշեղ կիրառման շնորհիվ, հնարավորություն է ստեղծում ամենուրեք կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքը տանել այնպես, որ աշխատավորական ամեն մի կոլեկտիվ դառնա անհատի ստեղծագործական ուժերի զարգացման գործուն սոցիալական բջիջ: Աշխատանքային կոլեկտիվների և պետական ձեռնարկության (միավորման) մասին օրենքները բխում են սոցիալիստական դեմոկրատիայի էությունից: Կուսակցությունը հետևողականորեն վարում է պետական որոշումների մշակման և ընդունման պրոցեսի դեմոկրատացման կուրս: Ընդլայնվում են այն հարցերի շրջանակները, «որոնց առթիվ որոշումներ կարող են ընդունվել աշխատավորական կոլեկտիվներում, սովետների մշտական հանձնաժողովներում, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններում քննարկվելուց հետո միայն» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 223): Այդ հարցերի շրջանակների մեջ են մտնում նաև առավել կարևոր օրինագծերի ու որոշումների համաժողովրդական քննարկումներն ու քվեարկումները, ընտրողների պատվիրանների իրականացման ձևերի ու մեթոդների կատարելագործումը, քաղաքացիների դիմումների ու առաջարկությունների ընդհանրացման ու իրացման, հասարակական կարծիքի ուսումնասիրման համակարգը, ընդունված որոշումների և դրանց կատարման արդյունքներին բնակչության իրազեկությունը:

---

կան հարաբերությունների ամբողջ համակարգի նպատակամղված, պլանաչափ ու համակողմանի կատարելագործում:

Սոցիալիզմի օրոք հանրային սեփականության պայմաններում մարդը արտադրության միջոցների տերն է: Սոցիալիստական սեփականության իրեղեն տարրերի նկատմամբ իսկական տիրոջ վերաբերմունքի ձևավորումը երկարատև պրոցես է, որի ընթացքում Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, տեղի է ունենում բոլոր աշխատանքային հմտությունների ու բարքերի վերամշակում, ձևավորվում է կոլեկտիվ գիտակցություն, վարքագիծ, ձեռք է բերվում աշխատողների սոցիալական հասունության ավելի բարձր մակարդակ (տե՛ս ԵԼԺ, հ. 41, էջ 131—132): Ինչպես նշվում է ՍՄԿԿ ծրագրում, «Խնայողականությունը, ժողովրդական միջոցների խելացի ծախսումը, յուրաքանչյուր ռուբլու ռացիոնալ օգտագործումը, անտնտեսվարության վերացումը, տարբեր անարտադրողական ծախսերի ու կորուստների բացառումը համակուսակցական, համաժողովրդական գործ են, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատողի գործը» (ՍՄԿԿ ծրագիր, էջ 49): Խնայողության՝ որպես հանրային արտադրության ինտենսիվացման, նրա զարգացման արագացման գործոնի դերը հետազոտվել ու բացահայտվել էր տակավին մարքսիզմ-լենինիզմի դասականների կողմից: Կ. Մարքսը, նշելով վերարտադրական պրոցեսի ինտենսիվացման օրինաչափությունները, ուշադրություն էր հրավիրում այն բանի վրա, որ որոշ փուլում առաջանում է ավելի արդյունավետ միջոցների կիրառման հաշվին արտադրության աճի օբյեկտիվ անհրաժեշտություն: Որքան քիչ են կենդանի ու իրայնացված աշխատանքի ծախսումները, այնքան ավելի արդյունավետ է արտադրությունը և բարձր է աշխատանքի արտադրողականությունը: Այսպիսով, խնայողական աշխատանքը, ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը տնտեսական ու սոցիալական առաջադիմության կարևորագույն միջոց է ու լծակ, իսկ ժամանակի խնայողությունը, Կ. Մարքսի արտահայտությամբ, կոլեկտիվ արտադրության առաջին տնտեսագիտական օրենքն է:

Վ. Ի. Լենինը նույնպես աշխատանքի արտադրողականության աճի գործոնների թվում առանձնահատուկ ուշադրություն էր նվիրում ռեսուրսների խնայողական ծախսմանը: Ըստ որում խնայողության հնարավորությունն ու անհրաժեշտությունը նա դիտում էր հասարակական արտադրության ոլորտում աշխատավոր մարդու գրաված նոր դիրքի մեջ: Մեր ժամանակում, երբ ձեռք է բերվել երկրի հսկայական մասշտաբների արտադրատնտեսական պոտենցիալ, պայքարը շռայլության ու կորուստների դեմ ստանում է ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական մեծ նշանակություն: Չէ որ ինչքան ավելի նշանակալի են օգտագործվող ռեսուրսների չափերը, այնքան ավելի ծանրակշիռ է դրանց խնայողական կիրառումից ստացվող շահը, և ընդհակառակն, վատնողությունը մեծացնում է վնասը:

Սակայն հանրային ունեցվածքի տերը լինելու իրավունքը դեռևս չի նշանակում իրոք տնտեսատիրոջ վերաբերմունքի ցուցաբերում հասարակության նյութական արժեքներին, որն ապահովում է տնտեսական բարձր հասույց: Գլխավոր պատճառն այստեղ, մեր կարծիքով, արտադրական հարաբերությունների անկատարելությունն է, նրանց անհամապատասխանությունը արտադրողական ուժերի զարգացման արդի մակարդակին: Քաղաքատնտեսության՝ որպես արտադրական հարաբերությունների մասին գիտության խնդիրն է որոշել, թե ինչ ուղղություններով պետք է իրականացվի վերակառուցումը, տնտեսագիտական նոր մտածողությունը և մարդկային գործոնի ակտիվացումը: Վերակառուցման նպատակն է՝ պայմաններ ապահովել յուրաքանչյուր աշխատավորի, կոլեկտիվի արդյունավետ գործունեության համար:

Արտադրության մարդկային գործոնի ներազդեցությունը սերտորեն կապված է աշխատանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքի, պատասխանատվության, կարգապահության հետ: Նրա ակտիվացումը ենթադրում է աշխատողների հոգեբանական վերակառուցում, առաջավոր գիտության ու տեխնիկայի նկատմամբ առավել ընկալունակություն:

Մեքենայական արտադրությանը փոխարինելու եկած ինդուստրիալ-գիտական արտադրության պայմաններում աշխատանքն ավելի ու ավելի է ստանում «գիտական բնույթ» և «հանդիսանում» մարդու լարվածություն ոչ թե որպես բնության որոշակի կերպով վարժեցված ուժի, այլ որպես այնպիսի մի սուբյեկտի, որն արտադրության պրոցեսում հանդես է գալիս ոչ թե զուտ բնական, բնականորեն գոյացած ձևով, այլ բնության բոլոր ուժերը կառավարող գործունեության տեսքով» (Маркс К.. Энгельс Ф., Соч., т. 46, ч. II, стр. 110):



Այդ հիման վրա ժամանակակից արտադրության մեջ առանձնապես արժեքավոր են դառնում մարդու գիտական գիտելիքները, նրա ընդունակությունն ու շահագրգռվածությունը գիտության նվաճումները արտադրության մեջ արմատավորելու հարցում: Պատկերավոր արտահայտությամբ, նոր տեխնիկան ու տեխնոլոգիան, աշխատանքի բուն բովանդակությունը «ուրիշ խելք» են պահանջում մարդուց: Իսկ եթե աշխատողի հիշյալ հատկությունները չհամապատասխանեն արդի պահանջներին, ապա մարդկային գործոնը կարող է արգելակի դեր խաղալ արտադրության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջադիմության գործում:

Մարդկային գործոնի ակտիվացման ձևերից մեկը աշխատավորներին սոցիալիստական արտադրության կառավարման պրոցեսին լայնորեն ներգրավելն է: Ըստ որում համաժողովրդական սեփականության հարաբերությունների իրացումը պահանջում է արտադրության կառավարման մեջ ներգրավել, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, հասարակության բոլոր անդամներին «անխտիր»: Հասարակական զարգացման արդի փուլում կարևոր դեր է պատկանում աշխատանքի կազմակերպման ու խթանման նոր, արդյունավետ ձևերին:

Արտադրության մարդկային գործոնի ակտիվացմանը նպաստում է օբյեկտիվ տնտեսագիտական օրենքների համակարգի, մասնավորապես, ըստ աշխատանքի բաշխման օրենքի կիրառումը: Ժամանակակից արտադրության մեջ մարդու դերի աճին, գիտատեխնիկական առաջադիմությանը նրա ակտիվ ներգրավմանը կոչված է նպաստել սոցիալական արդարության գաղափարի իրացումը, որը ենթադրում է բաշխման հարաբերությունների կատարելագործում՝ «յուրաքանչյուրը՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքի առավել լրիվ իրականացման ուղղությամբ: Դա ավելի մեծ չափով կնպաստի նաև աշխատանքի աստիճանական վերածմանը յուրաքանչյուր մարդու առաջին կենսական պահանջմունքի, նրա ստեղծագործական բովանդակության, կոլեկտիվիստական բնույթի ուժեղացմանը, կուլտուրայի բարձրացմանը: Ուստի սովետական հասարակության սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական առաջադիմության արագացման հիմնական հնարավորությունները ոչ միայն, իսկ գուցեև, ոչ այնքան մի քանի նոր և գերնոր ճյուղերի առաջնահերթ զարգացումն է: Տնտեսական առաջադիմության առավել մեծ հնարավորություններ են պարունակում արտադրական պոտենցիալի արդիականացումը և ռացիոնալ օգտագործումը: Մենք ավելի շատ ենք մետաղ արտադրում, քան ԱՄՆ-ը և դրանից ավելին մեզ պետք չէ, մեզ հարկավոր է ուրիշ, այլ որակի մետաղ: Մենք ավելի շատ էներգիայի կարիք չունենք. ՍՍՀՄ ազգային եկամտի էներգատարությունը գրեթե 1,5 անգամ բարձր է արևմտյան երկրների մեծ մասից, իսկ էներգախնայող տեխնոլոգիայի արմատավորումը տալիս է նույն արդյունքը, բայց միայն 3—4 անգամ ավելի էժան, քան նոր նավթահանքերի հորատումը: Հարկ չկա ընդլայնել անտառահատման տարածությունները. մենք այսօր գործի ենք դնում փայտանյութի ընդամենը 30 տոկոսը: Մինչդեռ ԱՄՆ-ում, Կանադայում, Շվեդիայում հումքի օգտագործման աստիճանը անտառային արդյունաբերության մեջ այսօր կազմում է 95 տոկոս: Մեզ համար նպատակահարմար չէ շուռ տալ գետերի հոսանքները, անհրաժեշտ է կանխել գործող ոռոգման ցանցերում ջրի շռայլումն ու ահավոր կորուստները, որոշ հաշվարկներով այդ կորուստները հասնում են 75 տոկոսի:

Այնուհետև, երկիրը կարող է հրաժարվել հացահատիկի ներմուծումից և, հետևաբար, այդպիսի մասշտաբներով նավթի արտահանումից. հացահատիկի ներմուծվող քանակը փաստորեն հավասար է մեր սեփական բերքի ամենամյա կորուստներին: Մեզ պետք չեն նոր տրակտորներ, առանց այն էլ դրանք արտադրում ենք ավելի, քան ԱՄՆ-ը: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ երկրում արդեն եղած տրակտորային համակազմը գործի, այլ ոչ թե պարապ կանգնած մնա, որ գրեթե ամեն մի երկրորդ տրակտոր չքանդեն ու պահեստամասեր չդարձնեն: Մենք ավելի շատ հաստոցների կարիք չունենք, դրանցից արդեն ունենք ավելի շատ, քան ԱՄՆ-ը: Մեզ պետք են այլ որակի հաստոցներ և որպեսզի դրանք աշխատեն ոչ թե մեկ հերթափոխ, այլ գոնե երկու, չխոսելով արդեն երեքի մասին: Մեզ ավելի շատ կոշիկ էլ պետք չէ, մենք առանց այն էլ աշխարհում ամենից շատ ենք արտադրում, բայց խանութում գնելու բան չկա:

Քանակական աճ պետք չէ, համենայն դեպս ճյուղերի մեծ մասում: Անհրաժեշտ է ոչ թե քանակական, այլ որակական աճ, ոչ թե ամեն տեսակ համախառնի, ամեն

տեսակ արտադրանքի հավելաճ՝ հանում կախարդական տոկոսների: Դա աճի նոր, տեխնիկապես առաջավոր որակ է և կարող է հանգեցնել համախառնի նվազեցման: Բայց դրա փոխարեն որակական աճը երաշխիք է այն բանի, որ մետաղը արտադրվելու է ոչ թե հաստոցը ծանրացնելու, այլ նոր, առաջադիմական պրոֆիլների համար, իսկ կոշիկներն էլ արտադրվելու են ոչ թե պահեստներում փտելու համար, այլ որպեսզի մարդիկ հագնեն: Ուստի ամբողջ հասակով մեկ ծառացել է որակի պրոբլեմը: Այս առումով արտադրանքի պետընդունման կիրառումը կարևոր առաջընթաց քայլ է և մենք բնականաբար դրական արդյունքներ ենք սպասում դրանից: Սակայն սխալ է այն պատկերացումը, թե պետընդունումը արտադրանքի որակի շեշտակի բարձրացման վերջնականապես գտնված մեթոդն է:

Բանն այն է, որ պետընդունումը կարող է տալ կարևոր, բայց լոկ սահմանափակ արդյունք: Նրա սահմանափակությունը անխուսափելի է այն պատճառով, որ վերահսկողությունը՝ պատրաստի արտադրանքի նկատմամբ, աննշան չափով է միայն ազդում արտադրության բուն պրոցեսի վրա: Օրինակ, մասնագետների գնահատումներով, արտադրանքի որակի ապահովման բոլոր միջոցների 75 տոկոսը բաժին է ընկնում կոնստրուկտիվ լուծումներին, նախագծմանը, մակետի մշակմանն ու փորձնական նմուշների պատրաստմանը, տեխնոլոգիայի կարգավորմանը, 20 տոկոսը՝ բուն արտադրական պրոցեսների վերահսկողությանը և 5 տոկոսը միայն՝ արտադրանքի վերջնական ընդունմանը, այսինքն մարդկային գործոնին: Հաշվարկները ցույց են տալիս, որ սխալների 15—20 տոկոսն է կատարվում անմիջական կատարողների մեղքով, մնացածները կապված են արտադրական պրոցեսից վեր կանգնած կառավարչական բուրգի որոշումների ու գործողությունների, այլ խոսքով՝ տնտեսագիտական մեխանիզմի հետ:

Չպետք է աչքաթող անել, որ պետընդունումը որակի գնահատումից հեռու է պահում ամենաշահագրգռված կողմին՝ սպառողին, կարևոր չէ, թե դա ձեռնարկությու՞ն է, որի համար նախատեսված է արտադրանքը, թե՞ մարդը՝ խանութում: Ստանալով ընդունողի դրոշմը իր արտադրատեսակների վրա, արտադրող ձեռնարկությունը կկարողանա երբեմն նույնիսկ ավելի ուժեղ ճնշում գործադրել թե՛ մեկի և թե՛ մյուսի վրա: Իսկ ներկայումս գործող տնտեսական համակարգի գլխավոր արատը՝ արտադրողի թելադրանքը, ըստ էության, կմնա անձեռնմխելի:

Շատ տեսաբաններ և պրակտիկներ այսօր համաձայն են այն բանում, որ վաճառահանման երաշխավորված շուկան, արտադրանքի բաշխումը, ըստ քարտերի, սպառողների խիստ և, ըստ էության, բռնի կցումը առաքողներին, այսինքն՝ արտադրողի մենաշնորհը, գլխավոր պատճառն է այն բանի, որ սովետական էկոնոմիկայի որոշ ճյուղերի արտադրանքը շատ քիչ է պիտանի: Մինչդեռ հենց գլխավոր հիվանդությունը արտադրողի մենաշնորհն է, որին պետընդունումը չի դիպչում: Ստացվում է, որ մենք դարձյալ ամենից շատ ենք ապավինում այնպիսի գործոնների, ինչպիսիք են պետընդունողի անձի անսասանությունը, կուսակցական խիղճը, անձնական ազնվությունը, ղեկավարությունից վախենալը, իսկ այդ ընդունողին կյանքը, սակայն, կարող է շատ շուտով «կապկպել» հսկողության ենթակա մարդկանց հետ: Այո՛, պետընդունումը լավ է որպես առաջին, արտակարգ միջոց, կիսամիջոց, բայց ոչ որպես փրկարար լծակ: Ելքը միայն արտադրողի մենաշնորհի աստիճանական թուլացումն է, իսկ ապա նաև լրիվ վերացումը սովետական էկոնոմիկայում, որը կարող է տալ սկզբունքորեն նոր բան: Սպառողը պետք է ունենա և՛ իրավունքներ և՛ հնարավորություն՝ վերցնելու կամ չվերցնելու այն, ինչ առաջարկում են իրեն: Դա նշանակում է, որ նա պետք է ունենա ռեալ ընտրություն: Իսկ արտադրողը պետք է ունենա ռեալ վտանգ, որ կհասնի ընդհուպ մինչև կատարյալ սնանկացման, եթե իր արտադրանքը չվաճառվի: Միայն այդպես կարելի է ոչ թե խոսքով, այլ գործով խարխլել «փոխադարձ ներողամտության» կանոնակարգը, երբ սպառող ձեռնարկությունը ներում է առաքողին՝ խոտանի համար, գիտենալով, որ արդեն իրենը դարձած ապրանքային խոտանն էլ, իր հերթին, ինչ-որ տեղ «կտեղավորվի»: Ներկայումս ատեստավորման ենթակա արտադրանքի ծավալում որակի նիշ ունեցող արտադրանքի տեսակարար կշիռը հանրապետությունում կազմում է 50 տոկոս, իսկ ընթացիկ հնգամյակի վերջում այն պետք է հասցնել 60—65 տոկոսի: Բայց կկարողանա՞նք մենք դա կատարել: Չափազանց խորն են այս պրոբլեմի արմատները, և չափազանց երկար ժամանակ է նա մեզանում եղել երկրորդական:



Ընտրությունը, մրցակցությունը օբյեկտիվ պայման են, առանց որի ոչ մի տնտեսական համակարգ չի կարող լինել կենսունակ կամ գոնե բավականաչափ արդյունավետ: Համընդհանուր դեֆիցիտը տնտեսական այն իրադրությունը չէ, որում արտադրողներն իրենք շահագրգռված լինեն որոնելու տեխնիկական նոր լուծումներ: Ամեն մի մենաշնորհ անխուսափելիորեն տանում է դեպի լճացում, իսկ բացարձակ մենաշնորհը՝ դեպի բացարձակ լճացում:

XIX հազարամյակի... 

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումը առանձնահատուկ կերպով ընդգծեց հանրապետության էկոնոմիկայում, սոցիալական ոլորտում լճացման երևույթների հաղթահարման մեջ մարդկային գործոնի ունեցած դերն ու նշանակությունը: Չէ որ մեր հասարակության արմատական վերակառուցման կենտրոնում մարդն է՝ իր հասունացած պրոբլեմներով, կարիքներով ու հոգսերով:

---

# ԱԶԳԱՅԻՆ ԵՎ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՇԱՀԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ՄԱԿԻՆՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ պրոցեսում ձևավորվեց բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ միասնությունը, վերածնվեցին ու զարգացան բոլոր ազգերի ու ազգությունների մշակույթները, համեմատաբար արագ առաջադիմեցին նախկինում հետամնաց ազգային ծայրամասերը, ստեղծվել է ժողովրդատնտեսական համալիր, որը ՍՍՀՄ ժողովուրդների միասնության նյութական հիմքն է:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսն առանձնապես շեշտեց. «Վ. Ի. Լենինի ստեղծած սովետական սոցիալիստական պետությունը մարմնավորել է իրավահավասար ժողովուրդների բազմազգ ընտանիքի հեղափոխական կամքն ու ձգտումները»: Անչափ մեծացել է բոլոր հանրապետությունների և ինքնավար կազմավորումների տնտեսական, մշակութային, կադրային պոտենցիալը: Տեղի է ունենում ազգային ինքնագիտակցության օրինաչափ աճ: Այդուհանդերձ, ազգային հարաբերությունների բնագավառում տեղ են գտել նաև սխալներ ու վրիպումներ: Անհատի պաշտամունքի և լճացման տարիներին բացարձակացվել են ազգային հարցի լուծման գործում ձեռք բերված արդյունքները, հաստատվել ազգային հարաբերությունների անպրոբլեմայնության մտայնություն: Լիովին հաշվի չեն առնվել ինչպես առանձին հանրապետությունների և ինքնավար կազմավորումների, այնպես էլ ազգային խմբերի սոցիալ-տնտեսական, մշակութային զարգացման պահանջմունքները: Ժամանակին չեն լուծվել կամ սխալ են լուծվել ոչ քիչ թվով սուր հարցեր, որոնք առաջադրվել էին ազգերի ու ազգությունների զարգացման բուն ընթացքով:

Ինտերնացիոնալիզմը և ժողովուրդների բարեկամությունը հռչակելով որպես մեր հասարակարգի հիմքերի հիմքը, հաճախ մոռացության էր տրվում այն ճշմարտությունը, որ առանց ազգայինի չկա ինտերնացիոնալիստականը: Ժողովուրդների բարեկամությունը ենթադրում է հավասարաչափ հարգանք յուրաքանչյուր ազգի ու ազգության նկատմամբ՝ անկախ նրանց թվակազմից:

Վերակառուցումը, դեմոկրատացումն ու հրապարակայնությունը, բացախոսությունը մերկացրին ազգային հարաբերություններում եղած բացասական երևույթները, անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեցին դրանց դեմոկրատական հաղթահարման համար:

Կուսակցության XIX համամիութենական կոնֆերանսը պատմական կարևորություն ունեցող խնդիր է առաջադրել՝ հաստատակամորեն հաստատել և ստեղծագործաբար զարգացնել ազգային քաղաքականության լենինյան նորմերն ու սկըզբունքները, դրանք մաքրել ձևախեղումներից ու սխալներից: Դրա համար հիմք է հանդիսանում ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած քաղաքական կուրսը՝ յուրաքանչյուր ազգի և ազգության շահերի ու պահանջմունքների մանրակրկիտ հաշվառում, սովետական ժողովրդի շահերի հետ դրանց օրգանական զուգակցում, հասարակական զարգացման հրատապ խնդիրների լուծման համար բազմազգ աշխատավորների ջանքերի միավորում, ժողովուրդների բարեկամության ամրապնդում:

---

*ՄԱԿԻՆՅԱՆ ՀՐԱՆՏ ԼԵՎՈՆԻ— Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ, Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի գիտական կոմունիզմի ամբիոնի վարիչ:*



Երկրի զարգացման ներկա փուլում տեսական ու քաղաքական հրատապ խնդիր է ազգային և ինտերնացիոնալ շահերի միասնության ամրապնդման հետ կապված պրոբլեմների գիտական լուսաբանումը: Այդ շահերի միասնության գիտակցումը, սովետական բոլոր մարդկանց վարքի նորմ դարձնելը գաղափարական աշխատանքի առանցքային հարցերից է:

Սոցիալիստական արտադրահարաբերությունների հիման վրա մեր երկրում ձևավորվեցին սովետական մարդկանց նոր տիպի հասարակական շահերը: Սոցիալիստական շինարարության պրոցեսում հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական և դասակարգային հարաբերություններում կատարվեցին քանակական և որակական խոր փոփոխություններ: Վերացվեցին շահագործումը, գործազրկությունը, անգրագիտությունը, աստիճանաբար ամրապնդվեց բանվորների և գյուղացիների դաշինքը: Հետզհետե ձևավորվեց բազմազգ աշխատավորների շահերի ու նպատակների միասնություն:

Հասարակական շահերի մեջ որոշակի տեղ են գրավում ազգային շահերը: Այս կամ այն ժողովրդի ազգային շահերը պետք է բացատրել ոչ թե կարծեցյալ «ազգային ոգով», ինչպես պնդում են բուրժուական գաղափարախոսները, այլ նրանց կյանքի իրական պայմաններով: Ազգային շահերը պայմանավորված են ազգի արտադրողական ուժերի զարգացման աստիճանով, նյութական բարիքների արտադրության եղանակով, արտադրահարաբերությունների բնույթով և այլ ազգերի հանդեպ վերաբերմունքով:

Ազգային շահերի էությունը բացատրելիս ամենից առաջ պետք է հաշվի առնել, թե որ դասակարգի շահերն են տվյալ ժամանակաշրջանում գերիշխողը: Այդ կապակցությամբ Վ. Ի. Լենինը գրել է. «Եթե դուք չեք ցույց տվել, թե ո՛ր դասակարգերի շահերը և տվյալ ժամանակում գերակշռող հատկապես ո՛ր շահերն են որոշում տարբեր կուսակցությունների ու նրանց քաղաքականության էությունը, ապա դուք փաստորեն մարքսիզմ չեք կիրառել, դուք փաստորեն դասակարգային պայքարի տեսությունը դուրս եք գցել» (ԵԼԺ, հ. 15, էջ 462):

ՍՄԿԿ XXVII համագումարը հավաստեց. «Լենինից եկող մեր կուսակցության ավանդույթն է՝ առանձնակի զգայնությունը և շրջահայեցությունը այն ամենի մեջ, ինչը վերաբերում է ազգային քաղաքականությանը, շոշափում է յուրաքանչյուր ազգի և ազգության շահերը, մարդկանց ազգային զգացմունքները» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 75)): Սոցիալիզմի ժամանակ ազգային ըմբռնումն ընդգրկում է ազգի կյանքի ամենատարբեր կողմերը: Ընդհանուր ճանաչում են գտել այնպիսի հասկացություններ, ինչպիսիք են՝ «ազգային տնտեսություն», «ազգային տերիտորիա», «ազգային պետականություն», «ազգային մշակույթ», «ազգային լեզու», «ազգային բնավորություն», «ազգային ավանդույթներ», «ազգային ինքնագիտակցություն» և այլն:

Տնտեսական կյանքի բնագավառում ազգայինը ազգերի արտադրողական ուժերն են, նրանց տնտեսության ճյուղերն ամբողջությամբ վերցրած, քաղաքական բնագավառում՝ ազգային պետականությունը, հոգևոր բնագավառում՝ ազգային մշակույթը, ազգային ինքնագիտակցությունը, բնավորությունը և այլն: Հետևաբար, ազգայինը ազգի գոյության և զարգացման սոցիալ-տնտեսական, քաղաքական և հոգևոր պայմանների ամբողջությունն է:

Սոցիալիզմի կատարելագործման պայմաններում ազգային շահերի վերաբերյալ հարցերը քննարկելիս պետք է հաշվի առնել, որ դրանք արտացոլում են բազմապիսի հասարակական կապեր: Ազգը չի համարվում մարդկանց հասարակ ամբողջություն: Այն բաղկացած է ռեալ գոյություն ունեցող դասակարգերից ու սոցիալական խավերից, որոնցից յուրաքանչյուրն ունի իր շահերը: Հետևաբար, ազգային շահերը բնորոշելիս անհրաժեշտ է հաշվի առնել ազգայինի և ազգային յուրահատուկի հարաբերակցությունը: Արտացոլելով ժողովուրդների ազգային և ընդհանուր պահանջմունքները՝ ազգային շահերը շարունակ ինտերնացիոնալացվում և մերձեցվում են: Մերձեցումը նպաստում է ինտերնացիոնալ խնդիրների իրագործմանը: Վ. Ի. Լենինը սովորեցնում է, որ անհրաժեշտ է «հետազոտել, ուսումնասիրել, գտնել, կռահել, ըմբռնել ազգային-առանձնահատուկը, ազգային-յուրահատուկը միասնական ինտերնացիոնալ խնդիրը լուծելու համար...» (ԵԼԺ, հ. 41, էջ 95):

Սոցիալիստական շինարարության փորձը վկայում է, որ ներկայումս մեր բազմազգ պետության միջազգային շահերը ազգերի նյութական, քաղաքական և հոգևոր կյանքի զարգացումն է, նրանց ծաղկումն ու մերձեցումը, պահանջմունքների բավարարումը: Այդ շահերը ներառում են ազգի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի պահանջմունքները: Նրանք, արտահայտելով բազմազգ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և սոցիալիստական մտավորականության շահերը, ներառում են սոցիալ-դասակարգայինը, էթնիկականը, ինտերնացիոնալիստականը: Այստեղից հետևում է, որ սոցիալիզմը որպես հասարակական կարգ, ազգերին բերում է իսկական տնտեսական ու կուլտուրական ծաղկում, սոցիալիզմի շահերը դառնում են ազգերի արմատական շահերը, իսկ ազգերի բազմակողմանի զարգացումը՝ սոցիալիզմի գլխավոր նպատակը: Այդ է սոցիալիզմի ժամանակ դասակարգային և ազգային շահերի միասնության դիալեկտիկան:

Սոցիալիզմի պատմական փորձը վկայում է, որ ազգային շահն իր բովանդակությամբ սոցիալիստական է: Ուստի և ազգային գործոնները ոչ թե հետզհետե թուլանում, այլ շարունակ զարգանում են: Հետևաբար այն երբեք չի կարելի համարել հեռանկար չունեցող երևույթ: Ժողովուրդների կյանքում ազգային առանձնահատկությունները զարգանում են ինտերնացիոնալիզմի հիման վրա: Այդ նշանակում է, որ ազգային շահը ծառայում է առաջադիմությանը, բազմազան դարձնում հասարակական զարգացումը, նպաստում հաղթահարելու միօրինակությունն ու միապաղաղությունը, հարստացնում ինտերնացիոնալիստականը: Իսկական ինտերնացիոնալիստականի հիման վրա ազգային շահերի զարգացումը հնարավորություններ է ընձեռում համախմբելու ազգերին ու ազգություններին, արագացնում նյութական ու հոգևոր արժեքների ստեղծումը, ամրապնդում ժողովուրդների մեծ բարեկամությունը:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը խնդիր դրեց ակտիվացնել քաղաքական սիստեմի այն հաստատությունները, որոնց միջոցով պետք է ի հայտ բերվեն և համաձայնեցվեն ազգային շահերը: Այդ առնչությամբ առաջնակարգ նշանակություն ունի ժողովրդական դեպուտատների սովետների, նախ և առաջ ՍՍՀՄ Գերագույն սովետի, ազգությունների սովետի, նրա մշտական հանձնաժողովների, ինչպես նաև ՍՍՀՄ կառավարության դերի բարձրացումը: Կոնֆերանսը նպատակահարմար գտավ ՍՍՀՄ Գերագույն սովետում Միութենական և ինքնավար հանրապետությունների Գերագույն սովետներում, տեղական սովետներում, որտեղ դա անհրաժեշտ է, ստեղծել ազգամիջյան հարաբերությունների հարցերով զբաղվող մշտական հանձնաժողովներ: ՍՄԿԿ Կենտկոմի առաջիկա պլենումներից մեկը կքննարկի ազգերի և ազգային հարաբերությունների վերաբերյալ հարցը:

Սոցիալիզմի պատմական փորձը վկայում է, որ պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ամուր հիմքի վրա ձևավորվեցին մեր երկրի ազգերի ու ազգությունների, ողջ սովետական ժողովրդի ինտերնացիոնալ շահերը: ՍՍՀՄ կազմավորումը դարձավ սոցիալիստական ազգերի և ազգությունների ընդհանուր ինտերնացիոնալ շահերի ձևավորման ու զարգացման քաղաքական գործոնը:

Սոցիալիստական շահերի մեջ ինտերնացիոնալ շահերն ունեն իրենց տնտեսական, քաղաքական և գաղափարական հիմքերը: Տնտեսական հիմքը սոցիալիստական արտադրաեղանակն է, քաղաքական հիմքը՝ սովետական հասարակական և պետական կարգը, գաղափարական հիմքը՝ մարքսիզմ-լենինիզմը:

Ինտերնացիոնալ շահերի ձևավորման ու զարգացման գործում որոշիչ դերը պատկանում է սոցիալիստական արտադրահարաբերություններին, առաջին հերթին նրանց գլխավոր տարրին՝ սեփականատիրական հարաբերություններին: Արտադրության միջոցների հանրային սեփականության բազայի վրա, որի տերն ամբողջ ժողովուրդն է՝ բոլոր ազգերն ու ազգությունները, ստեղծվում է ինտերնացիոնալ շահերի տնտեսական հիմքը: Հանրային սոցիալիստական սեփականությունը միավորում է բոլոր ազգերին ու ազգություններին:

Ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի հաստատած կուրսը նախատեսում է արագացնել ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացումը: Դրա համար անհրաժեշտ են հասարակական արտադրության դինամիկ և համամասնական զարգացում, նրա արդյունավետության բարձրացում, գիտատեխնիկական առաջընթացի արագացում, աշխատանքի արտադրողականության բարձրացում, ժողովրդական տնտեսության



բոլոր օղակներում որակի ըստ ամենայնի բարելավում: Դրանք տասներկուերորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրներն են, որոնք և արտահայտում են ինչպես ողջ սովետական ժողովրդի, այնպես էլ նրա բաղկացուցիչ մասը կազմող ազգերի ու ազգությունների շահերը:

Սոցիալիստական հասարակության զարգացման բնագավառում տեղ գտած առանձին թերություններն ու վրիպումները բացասաբար են անդրադառնում ազգային հարաբերությունների կատարելագործման վրա: ՍՄԿԿ XXVII համագումարը, Կենտկոմի 1987 թ. հունվարյան և հունիսյան պլենումները ժողովրդին հստակորեն ներկայացրին երկրում տեղի ունեցած բացթողումների, էկոնոմիկայում, սոցիալ-հոգևոր ոլորտում աննպաստ միտումների և դրանց պատճառների մասին: Ղազախստանում, Մերձբալթիկայում, Յակուտիայում վերջին տարիներին տեղի ունեցած իրադարձությունները, Ղրիմի թաթարների պահանջները, Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը լենինյան ազգային քաղաքականությունից կատարված շեղումների վկայություններ են:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը մեր բազմազգ պետության, յուրաքանչյուր հանրապետության և ռեգիոնների տնտեսական շահերի միասնությունն ամրապնդելու նպատակով խնդիր դրեց մեծացնել նրանց ինքնուրույնությունը: Հարկավոր է իրականացնել համագործակցության այնպիսի ձևեր, որոնց դեպքում յուրաքանչյուր հանրապետություն, տնտեսական շրջան շահագրգռված լինի բարելավելու իր տնտեսական գործունեության վերջնական արդյունքները՝ որպես սեփական բարօրության, սովետական պետության ընդհանուր հարստության և հզորության բազմապատկման հիմք:

Կոնֆերանսի բանաձևում նշվեց. «Պետք է այնպես գործել, որ աշխատավորները լավ իմանան, թե հանրապետությունը կամ մարզը ինչքան է արտադրում, ինչպիսին է նրա ներդրումը երկրի էկոնոմիկայում և ինչքան է ստանում»:

Ինտերնացիոնալ և ազգային շահերի զուգակցումը տեղի է ունենում նաև հասարակական կյանքի այնպիսի կարևոր բնագավառում, ինչպիսին սովետական ազգերի ու ժողովուրդների հոգևոր կյանքն է: Յուրաքանչյուր ազգի մշակույթ սովետական ողջ ժողովրդի մշակույթի օրգանական մասն է: Իր հերթին՝ սովետական ժողովրդի մշակույթը մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների մշակույթների օրգանական համաձուլվածքն է: Սոցիալիզմի արդի փուլում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական մշակույթի մեջ արտահայտված է ինտերնացիոնալ և ազգային հոգևոր շահերի ներդաշնակ զարգացումը: Այդ նշանակում է, որ միասնական սովետական սոցիալիստական մշակույթն ընդգրկում է մեր հայրենիքի ժողովուրդներից յուրաքանչյուրի մշակույթի ու կենցաղի առավել արժեքավոր հատկանիշներն ու ավանդույթները: Միաժամանակ սովետական ազգային մշակույթներից ամեն մեկը սնվում է ոչ միայն սեփական աղբյուրներից, այլև մյուս եղբայրական ժողովուրդների հոգևոր հարստությունից: Այս ամենում արտահայտված է ժողովուրդների ազգային և ինտերնացիոնալ հոգևոր շահերի միասնությունը:

Անհատի պաշտամունքի և լճացման տարիներին յուրջ սխալներ ու վրիպումներ են եղել սովետական ազգերի ու ազգությունների հոգևոր մշակույթում: Մայրենի լեզուների և մշակույթի զարգացման բնագավառում եղել են սահմանափակումներ, լենինյան ազգային քաղաքականությունից շեղումներ ու վրիպումներ:

Լեռնային Ղարաբաղի հարցի առթիվ Հայկական ՍՍՀ և Ադրբեջանական ՍՍՀ Գերագույն սովետների որոշումների մասին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1988 թ. հուլիսի 18-ի նիստի որոշման մեջ շեշտված է, որ Ղարաբաղի Ինքնավար մարզում «երկար ժամանակ չէին լուծվում հայ բնակչության ազգային շահերը՝ շոշափող շատ հարցեր, հատկապես մշակույթի, կրթության ոլորտում, կադրային քաղաքականության մեջ: Խախտվում էին ինքնավար մարզի սահմանադրական իրավունքները: Այդ բոլոր բացասական երևույթները ոչ միայն ժամանակին չէին վերացվում, այլ կուտակվում էին»:

ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսի բանաձևում ասված է. «Կարևոր է, որ յուրաքանչյուր ազգային ռեգիոնում տնտեսական ու սոցիալական առաջընթացն ուղեկցվի հոգևոր առաջադիմությամբ՝ ազգերի ու ազգությունների մշակութային ինքնատիպության հենքի վրա»:

Ազգային շահերը դառնում են ինտերնացիոնալ, երբ դրանց իրագործումը նպաստում է սոցիալիստական բոլոր ազգերի զարգացմանը: Այս դեպքում ազգային շա-

ները երևան են գալիս որպես ինտերնացիոնալ շահերի բաղկացուցիչ մաս: Այլ կերպ ասած, ինտերնացիոնալ և ազգային շահերի միջև գոյություն ունի դիալեկտիկական կապ, այնպիսին, ինչպիսին գոյություն ունի ընդհանուրի ու առանձնահատուկի միջև:

Մեր բազմաթիվ սոցիալիստական երկրում սոցիալիզմի կառուցման հարուստ փորձը հաստատում է մարքսիզմ-լենինիզմի այն հետևությունը, որ սոցիալիստական ազգերի ու ազգությունների ազգային և ինտերնացիոնալ շահերի միասնության անընդհատ ամրապնդումն ազգային հարաբերությունների զարգացման բուն էությունն է: Այդ միասնությունն ամրակայվում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության լենինյան ազգային քաղաքականության կենսագործման միջոցով:

Կոմունիստական կուսակցության հետևողական դաստիարակչական աշխատանքի շնորհիվ ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարները հաստատվել են աշխատավորների մեծամասնության գիտակցության մեջ և գործելակերպում: Սակայն, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, աշխատավորների ինտերնացիոնալիստական դաստիարակության հետ կապված ոչ բոլոր պրոբլեմներն են լուծված: Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ինտերնացիոնալիզմը, ինտերնացիոնալ և ազգային շահերի միասնության գիտակցությունը դառնան սովետական բոլոր մարդկանց խոր համոզմունքն ու վարքի նորմը:

Անդրադառնալով սովետական ժողովրդի կյանքում ինտերնացիոնալիստական գաղափարախոսության արմատավորմանը՝ ՍՄԿԿ-ն միաժամանակ շեշտում է, որ սոցիալիզմի հետ անհամատեղելի են տեղայնության, ազգային սահմանափակության, բացառիկության, ազգային գոռոզամտության, սնապարծության, իր ժողովրդի փառաբանման, ուրիշ ժողովուրդների պատմության նսեմացման, իր ազգային նեղ շահերը ինտերնացիոնալ շահերից վեր դասելու, հայրենասիրությունը ինտերնացիոնալիզմին հակադրելու երևույթների դրսևորումները: Դրանք շարունակում են պահպանվել այնպիսի պայմաններում, երբ ազգերի հարաբերություններում որևէ հակամարտության օբյեկտիվ նախադրյալներ վաղուց ի վեր գոյություն չունեն: Երբեք չպետք է թույլ տալ, որ ազգային ինքնագիտակցության աճը վերածվի ազգային սնապարծության կամ գոռոզամտության: Միևնույն ժամանակ ազգային առանձնահատկությունների անտեսումը կարող է դիպչել մարդկանց ազգային զգացմունքներին և նպաստել նացիոնալիզմի մնացուկների աշխուժացմանը: Ազգային հարաբերություններում անթույլատրելի են ազգային արժանապատվության ու զգացմունքների ամենաաննշան վիրավորանքը, կասկածամտությունը, անվստահությունը:

Սոցիալիզմի դեմ ծավալված գաղափարախոսական պայքարում հակակոմունիզմը հույսը դնում է նացիոնալիզմի և շովինիզմի վրա: Բուրժուական գաղափարախոսներն ամեն կերպ ձգտում են թույլ տեղեր գտնել մեր երկրի ներսում, ցանկանում են քաղաքականապես ոչ հասուն մարդկանց օգտագործել սոցիալիզմի դեմ քայքայիչ աշխատանք տանելու համար: Անգլիական հետազոտող Անտոնի Սմիթն իր «Նացիոնալիզմի տեսությունները» աշխատության մեջ գրում է. «Նացիոնալիզմը համարվում է ամենահզոր պայթուցիկ ուժը աշխարհում»: Սոցիալիզմի հակառակորդները մեծագույն ճիգով ջանում են խրախուսել նման «իզմերը»՝ հույս ունենալով ինչ-որ չափով թուլացնել մեր երկրի ժողովուրդների ինտերնացիոնալ և ազգային շահերի միասնությունը:

Ինտերնացիոնալիզմը վարքի նորմ դարձնելը հեշտ գործ չէ: ՍՄԿԿ XIX համամիութենական կոնֆերանսը նշեց, որ սովետական մարդկանց յուրաքանչյուր սերունդ յուրովի է անցնում հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դպրոցը: Կարևոր է, որ արդեն անհատի նախնական սոցիալական փորձի մեջ՝ սկսած ընտանիքից ու դպրոցից, պիոներական ու կոմերիտական կազմակերպությունից, այդ արժեքները օրգանապես զուգակցվեն, հանդես գան անխզելի միասնությամբ, բացառեն ինչպես ազգային նիհիլիզմը, այնպես էլ ազգային մեկուսացվածությունը:

Կուսակցությունն անհրաժեշտ է համարում մարդկանց ձերբազերծել ազգայնական նախապաշարումների ամեն մի դրսևորումից, նրանց տոգորել մյուս ժողովուրդների նկատմամբ հարգանքի, բարեկամության ոգով: Սովետական յուրաքանչյուր քաղաքացի պետք է խորապես համոզվի, որ յուրաքանչյուր հանրապետության վիթխարի նվաճումները ձեռք են բերվել ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների համատեղ ջանքերով, որ ազգերի ծաղկումն ու մերձեցումը հնարավոր է միայն ժողովուրդների եղբայրական ընտանիքում:



Կոմունիստական կուսակցությունը պահանջում է ինտերնացիոնալ դաստիարակությունը վարել այնպես, որ տարբեր ազգերի ու ազգությունների պատկանող սովետական յուրաքանչյուր քաղաքացի հասկանա իր դերը բազմազգ սոցիալիստական պետության մեջ, ճանաչի իր ինտերնացիոնալ պարտքը ՍՍՀՄ ժողովուրդների միասնական ընտանիքում: Նրա համար պետք է հավասարապես թանկ ու հարազատ, հասկանալի լինեն ինչպես իր, այնպես էլ սովետական յուրաքանչյուր եղբայրական ժողովրդի շահերը:

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ձևավորման, դրսևորման հիմնական ոլորտը աշխատանքային կոլեկտիվներն են: Կոմունիստական կուսակցությունը պահանջում է, որ ինտերնացիոնալիստական համասովետական ընդհանուր գծերն ու նորմերը մարմնավորվեն բոլոր աշխատանքային կոլեկտիվներում, բազմազգ աշխատավորների գիտակցության մեջ արմատավորել այն իրողությունը, որ նյութական ու հոգևոր արտադրության շարունակ աճող ինտերնացիոնալացումը նրանց ինտերնացիոնալ միասնության օբյեկտիվ հիմքն է: Աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու հզոր միջոց է սոցիալիստական մրցությունը, որը մեր երկրի ազգերի ու ազգությունների աշխատավորների նախաձեռնությունը միավորում է մեկ միասնական ստեղծարար պրոցեսի մեջ: Մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացմանը նպատակաուղղված տարբեր ազգությունների պատկանող սովետական մարդկանց համատեղ աշխատանքն է՛լ ավելի կամրապնդի սովետական ժողովրդի ինտերնացիոնալ և ազգային շահերի միասնությունը:

Աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու կարևոր միջոց են եղբայրական հանրապետությունների գրականության և արվեստի տասնօրյակները, բարեկամության շաբաթներն ու օրերը, նրանց միջև կինոնկարների, գեղարվեստական ցուցահանդեսների փոխանակումը և այլն: Այժմ աշխատավորների ինտերնացիոնալիստական դաստիարակության համար օգտագործվում են նշանավոր իրադարձությունները հավերժացնող արարողությունները:

Մեծ է մասսայական ինֆորմացիայի միջոցների, պրոպագանդայի, մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի դերը աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում:

Մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կուսակցության մշակած կուրսը նախատեսում է նաև նորացնել քաղաքական ու գաղափարախոսական հաստատությունների աշխատանքի ձևերն ու մեթոդները: Դա նշանակում է, որ մեր բազմազգ հայրենիքում ժողովուրդների ինտերնացիոնալ և ազգային շահերի միասնության ամրապնդման համար անհրաժեշտ է ավելի մեծ ուշադրություն նվիրել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրներին: Դրա համար հարկավոր է գաղափարական, քաղդաստիարակչական աշխատանքներում համոզիչ կերպով բացահայտել սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների անպարտելիությունը, լայնորեն լուսաբանել կոմունիստական կուսակցության դերը բազմազգ աշխատավորների ինտերնացիոնալ համախմբման, ազգերի ու ազգությունների համակողմանի առաջադիմության ու մերձեցման գործում, կոնկրետ փաստերի հիման վրա պրոպագանդել սոցիալիզմի պատմական առավելությունները, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման կուսակցության կուրսը, կատարելագործել դաստիարակության ձևերն ու մեթոդները՝ մարքս-լենինյան տեսության և ՍՄԿԿ-ի պատմական փորձի խոր ուսումնասիրման հիման վրա:

Դրա հետ մեկտեղ ճշմարտությունը պահանջում է նշել, որ ներկայումս մեր մեծ Հայրենիքում ժողովուրդների ազգային և ինտերնացիոնալ շահերի միասնության ամրապնդման, աշխատավորներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության ոգով դաստիարակության հետ կապված աշխատանքները քիչ արդյունավետ կարող են լինել, քանի դեռ ազգային հարաբերություններում սխալներն ու վրիպումները իսպառ չեն վերացված: Սումգայիթի արյունոտ ոճրագործությունը ողբերգություն դարձավ ոչ միայն հայ ժողովրդի, այլև մեր ողջ երկրի համար:

Լեռնային Ղարաբաղի և նրա շուրջը տեղի ունեցած իրադարձությունների վերլուծությունը վկայում են, որ պրոբլեմը պետք է լուծվի հեղափոխական վերակառուց-

ման, դեմոկրատացման և ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հիմնարար սկզբունքներին համապատասխան։ Լեռնային Ղարաբաղի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումները տոգորված են ռեգիոնում կայունության վերահաստատման, հայ և ադրբեջանական ժողովուրդների իսկական բարեկամության ամրապնդման նկատմամբ հոգատարությամբ։ Լեռնային Ղարաբաղում կուտակված բոլոր պրոբլեմների լուծման իրական ուղին մարզի վերամիավորումն է Հայկական ՍՍՀ-ի հետ։ Դա կլինի ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման լավագույն վկայություն։ Պրոբլեմը որքան շուտ լուծվի, այնքան շուտ կվերականգնվեն հայ և ադրբեջանական ժողովուրդների բարեկամական հարաբերությունները։

Ներկայումս կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը խնդիր են դրել ազգային հարաբերությունների բնագավառում ուշադրությունը կենտրոնացնել՝ վերացնելու առանձին ռեգիոնների զարգացման բնագավառի լճացման երևույթները, հաղթահարելու ազգերի ու ազգությունների սոցիալ-տնտեսական ու հոգևոր պահանջմունքների թերագնահատման միտումները։

Անհրաժեշտ է իրականացնել ազգամիջյան հարաբերությունների իրավական բազան ամրապնդելու վերաբերյալ XIX կուսակցական կոնֆերանսի նախատեսած միջոցառումները, ուժեղացնել գաղափարական ու քաղաքական աշխատանքը, հաստատակամորեն ամրապնդել ժողովուրդների ազգային և ինտերնացիոնալ շահերի միասնությունը։ Այս է մեր ժամանակի հեղափոխական վերակառուցման հրամայականը։

---

# ԱՐՏԱԴՐԱԵՂԱՆԱԿԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕՐՈՔ

**Թ. ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ**

Մեր երկրում ներկայումս իրականացվող սոցիալ-տնտեսական քաղաքականությունը, որը բխում է նոր տնտեսական մեխանիզմի ու տնտեսության կառավարման դեմոկրատական ձևերի ստեղծման հիման վրա հասարակական կյանքի հեղափոխական վերակառուցման կոնցեպցիայից, կյանքի է կոչված հասարակության և անհատի շահերը մերձեցնելու կենսական անհրաժեշտությամբ։ Ինչպես ցույց տվեց XIX համամիութենական կուսկոնֆերանսը, դա շիտակորեն հասարակական պրակտիկային ուղղված քաղաքականություն է, որն զգայուն է նրա դինամիկայի նկատմամբ և արտահայտում է նրա՝ իբրև մարդկային գործունեության պրոցեսի ու արդյունքի, բուն էությունը։ Այդպիսի քաղաքականության շնորհիվ իրական բնութագծեր է ստանում ու աշխուժանում հասարակական պրակտիկայի սուբյեկտը և նրա հետ միասին հասարակական կապերն ու այն օրենքների համակարգը, որոնք բնութագրում են այդ կապերը։ Սոցիալ-տնտեսական քաղաքականության մեջ գործունեության սուբյեկտի և սոցիալական փոխազդեցության արդեն շոշափելի դարձած առկայությունը, որը հանդես է գալիս իբրև հասարակության կյանքում վերափոխումների աղբյուր ու պատճառ, ներկայումս կտրուկ կերպով փոխում է տեսական մտքի վիճակը։

Առաջադիմության սուբյեկտիվ, այսինքն՝ մարդկային գործոնի դերն աստիճանաբար տնտեսագետների ու սոցիոլոգների լարված ուշադրության հարց է դառնում։ Դրա նկատմամբ աճող հետաքրքրությունը կապված է ոչ միայն շեշտադրումների տեղաշարժման, այլև տեսական մշակումների որակական մակարդակի փոփոխության հետ։ Սոցիալիզմի օրոք հասարակական պրոգրեսի հանդեպ մոտեցման մեջ սխոլաստիկական կտրվածությունն իր տեղը զիջում է ստեղծագործական վերլուծությանը, սոցիալական պրոցեսների օբյեկտիվ բնույթը դադարում է փոխարինվել փոփոխությունների կանխորոշվածությամբ ու դիմազրկությամբ։ Այստեղ գլխավորը ծայրահեղ «օբյեկտիվացումը», այսինքն՝ հասարակական կյանքի իրողությունները մարդուց լիովին օտարելու միտումները հաղթահարելու ձգտումն է։

Այսօր լուրջ հետաքրքրություն է ներկայացնում սոցիալիստական արտադրաեղանակի առաջընթացի հնարավորությունների ուսումնասիրությունը, որոնք բացահայտվում են արտադրության սուբյեկտի՝ որպես գլխավոր արտադրաուժի և արտադրական, աշխատանքային հարաբերությունների կրողի, ունեցած դերի ակտիվացմամբ։ Հարկ չկա ապացուցելու այդ հնարավորությունների ժամանակին օգտագործման կարևորությունը. ամենքին էլ պարզ է, որ աշխատանքի և արտադրության բովանդակությունն ու հասարակական ձևն ընդգրկող արտադրաեղանակի առաջընթացն ընկած է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն ապահովելու կոչված նոր տնտեսական մեխանիզմի ձևավորման հիմքում։ Հենց հասարակական արտադրության ոլորտում էլ, նայած արտադրության եղանակին, տեղի կունենան այնպիսի փոփոխություններ, որոնք կնշանավորեն մեր հասարակության կյանքի բացասական ստերիոտիպերի հաղթահարումը, նրա բարձրագույն ձևերի ծնունդը։

*ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ ԹԵՐԵԶԱ ԱՐՏԱՎԱԶԴԻ — Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, Կ. Մարքսի անվան ԵրՊԻ-ի մարքսիզմ-լենինիզմի ամբիոնի դոցենտ։*

Սակայն բուն հասարակական արտադրեղանակի կատեգորիան նախկինում, ցավոք, օգտագործվում էր առաջադիմության սուբյեկտիվ և օբյեկտիվ կողմերի հարաբերակցության ծայրաստիճան աչառու մեկնաբանության համար: Ամեն մի հասարակական արտադրաեղանակի երկու կողմերը կազմող արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկան ըստ արմատավորված ավանդույթի մեր գրականության մեջ դիտվում է իբրև մի պրոցես, որը սուբյեկտիվ գործոնը լուծում է արտադրության ինքնուրույն օրինաչափությունների փոխգործողության մեջ: Արդյունքում սուբյեկտիվ գործոնը կորչում է մի կողմից՝ նրան դիմակայող արտադրության շարժիչ ուժերի մեջ, իսկ նշանակությունն էլ չքանում արտադրական պրոցեսի ինքնակա օրենքների, այն է՝ աշխատաեղանակի (նեղ իմաստով արտադրաեղանակի) զարգացմանը ներհատուկ օրենքների և, մյուս կողմից՝ տնտեսական բարդ համակարգը կազմող օրենքների գործողության տարերքում:

Արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների հարաբերակցության նկատմամբ այսպիսի մոտեցումը հասցրել է սոցիալիզմի օրոք արտադրաեղանակի զարգացման շարժիչ ուժերի մասին աղքատիկ պատկերացման: Բանն այն է, որ արտադրության այդ եղանակն սկսեց ըմբռնվել արտադրության սուբյեկտով իր այն պայմանավորվածությունից դուրս, որն էլ միայն ապահովում է նրա երկու կողմերի դիալեկտիկական միասնությունը: Չէ՞ որ արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացումը, երբ այն դիտվում է իբրև ինքնաբավ ու արտադրաեղանակի այդ կողմերից յուրաքանչյուրի համար առանձնահատուկ օբյեկտիվ օրինաչափությունների գործողություն, ամենից քիչ է հանդես գալիս անխզելի կապի տեսքով: Կորչում է այն բանի ըմբռնումը, թե տվյալ, ինչպես և ամեն մի այլ հակադրությունների դիալեկտիկայի նախադրյալը զարգացման կառուցվածքային հիմքով և միասնական աղբյուրով ապահովված նրանց միասնությունն է: Իսկ արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման ընդհանուր կառուցվածքային հիմքն ու միասնական աղբյուրն էլ բուն արտադրության սուբյեկտն է: Այդ պատճառով էլ դրանից վերանալու դեպքում արտադրաուժերը և արտադրահարաբերությունները բնութագրվում են առավելապես իբրև հակադրություններ, իսկ արտադրաեղանակն ամբողջությամբ ձեռք է բերում ինչ-որ վերսուբյեկտային «վիճակ»:

Այդ բանում համոզվելու համար դիմենք, օրինակ, սոցիալիստական հասարակության կառուցվածքին նվիրված ժամանակակից ուսումնասիրություններին: Տասնյակ տարիների ընթացքում այդ ուսումնասիրությունները հիմնվել են այն դրույթի վրա, թե արտադրաուժերը և արտադրահարաբերությունները հանդես են գալիս իբրև սոցիալական տարբերությունների միմյանցից անկախ աղբյուրներ: Դրանք համապատասխանաբար տարբերություններն են ըստ տեղի աշխատանքի հասարակական բաժանման համակարգում և այն տարբերությունները, որոնք ծնունդ են արտադրության միջոցների նկատմամբ սեփականության հարաբերությունների: Կանխագրելով սոցիալական կառուցվածքի զարգացման երկու աղբյուրներ, ուսումնասիրողները ի վերջո հանգեցին արտադրության սուբյեկտի, աշխատողի երկատված սոցիալ-տնտեսական կերպարանքի ուրվագծմանը: Դրանով իսկ նրանք իրենց ազատեցին հասարակության կառուցվածքում սոցիալական խմբերի իրական վիճակն ուսումնասիրելուց, վիճակ, որը որոշվում է աշխատանքում սեփականության հարաբերությունների փաստացի իրագործմամբ և բնութագրում է «հանրայնացումը գործնականորեն» (Վ. Ի. Լենին): Դեռ ավելին, սոցիալիստական հասարակության կառուցվածքի վերաբերյալ ուսումնասիրությունների մեծ մասին բնորոշ է այն պնդումը, թե սեփականության հարաբերություններից ծնված սոցիալական տարբերությունները կորցնում են իրենց առաջնակարգ նշանակությունը՝ զիջելով աշխատանքի հասարակական բաժանման համակարգում ըստ տեղի տարբերություններին: Այլ կերպ ասած՝ աշխատանքը և սեփականությունը լիովին սահմանազատվում են ու հակադրվում միմյանց:

Սոցիալական կառուցվածքի նկատմամբ ոչ դիալեկտիկական մոտեցումն արտացոլում էր սոցիալիզմի օրոք արտադրաեղանակի հետազոտության գործերի վիճակը: Արտադրաեղանակի կատեգորիան, որն ավելի շուտ կապված է ինքնակա օրինաչափությունների, քան մարդկանց պրակտիկ գործունեության հետ, ամենից հաճախ հանդես է գալիս դեկլարատիվ բնույթով: Իզուր չէ, որ «Կոմունիստ» պարբերականի էջերում դիտողություն երևաց այն մասին, թե արտադրաուժերի ու արտադրահարաբերությունների դիալեկտիկայի հասկացության մեկնաբանությունը շարունակում է մնալ մակերեսային, այբբենական: Նման մոտեցման դեպքում, ասված է այդ կապակցությամբ, ոչ մի նոր բան այդ պրոբլեմում կարելի չէ «հայտնագործել» (տե՛ս «Коммунист», 1986, № 17, էջ 124):



Արտադրաեղանակի կատեգորիայի կամ «արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկա» բանաձևի սխոլաստիկական մեկնաբանությունը, որը հանգրել է նրա գործնականության հայտնի չափով կորստյան, իր արմատներով հեռանում է դեպի արտադրաեղանակի կողմերի միասնության անբովանդակ հասկացողությունը: Նման այն բանին, որ ոչ վաղ անցյալում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքն իրագործվում էր ամլացած, կենդանի բովանդակությունից զրկված դեմոկրատիզմի և անող ցենտրալիզմի տեսքով, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկական փոխազդեցությունն էլ տեսության մեջ հառնում է իբրև հակադրությունների փոխթափանցելիության անընդունակ մի սառած ընդդիմակայություն: Առաջին դեպքում գործնականության սկզբունքի և երկրորդ դեպքում հետազոտության մեթոդաբանության ձևախեղումները հավասարապես ծնունդ են հասարակական (արտադրական) հարաբերությունների սուբյեկտի ակտիվ դերը չընդունելու գաղափարաքաղաքական մթնոլորտի, հասարակության մեջ ընթացող պրոցեսների դիմազրկության:

Արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկայի խզումը համանշանակ է արտադրության եղանակի առաջընթացը կարգավորող օրենքի գործողության աղավաղմանը, վերացմանը: Ըստ այդ օրենքի, ինչպես հայտնի է, արտադրահարաբերությունները համապատասխանում են արտադրաուժերի մակարդակին և զարգացման բնույթին: Այդ համապատասխանության աստիճանն արտահայտվում է այն բանում, թե որքանով են արտադրահարաբերությունները նպաստում, կամ, ընդհակառակն, խանգարում արտադրաուժերի զարգացմանը: Այդպես է բացահայտվում արտադրաեղանակի երկու կողմերի հակասականությունը, որոնց միասնությունն ապահովվում է նրանց ընդհանուր սոցիալական սուբստանցիայով՝ աշխատանքային պրոցեսով, արտադրության պրակտիկայով, որոնք կենսագործում են հասարակական մարդու զարգացման երկու կողմերը: Սակայն աշխատանքի և արտադրության բովանդակությունն ու հասարակական ձևը, բնականաբար, հակասական չեն, երբ դրանք պատկերացվում են զուգահեռաբար զարգացող, ինքնուրույն հակադրությունների տեսքով: Չէ՞ որ հակադրությունների միասնությունն է հանդիսանում դրանց հակասականության, դրանց իսկական դիալեկտիկական կապի նախադրյալն ու պայմանը: Նշանակի առանց արտադրաեղանակի կողմերի միասնության ըմբռնման չի կարելի հասկանալ նաև դրանց հակասականությունը:

Թե որքան հրատապ է այդ բանի ըմբռնումը, կարելի է տեսնել՝ դիմելով դեռևս մինչև երեկ իշխող տեսական պատկերացումներին ու կոնցեպցիաներին: Դրանց շրջանակներում հիմնավորվում էր այն դրույթը, թե սոցիալիստական արտադրահարաբերությունները, «առաջ են անցնում» արտադրաուժերի զարգացումից: Այդ դրույթն էլ ելակետային թեզիս ծառայեց սոցիալիզմի օրոք արտադրաուժերի և արտադրահարաբերությունների զարգացման անհակասականությունը տեսականորեն հիմնավորելու համար: Այսպիսով, նրանք, ովքեր խոսում էին սոցիալիստական արտադրաուժերին արտադրահարաբերությունների «լիակատար համապատասխանության» մասին, հավասարապես անտեսում էին թե՛ արտադրաեղանակի կողմերի միասնությունը, թե՛ նրանց միջև առաջ եկող իրական հակասությունները: Նման հայացքների ձևափոխություն է հանդիսանում արտադրաուժերին արտադրահարաբերությունների «ընդհանուր համապատասխանության» մասին պնդումը: Հակասությունների առկայությունը տվյալ դեպքում ընդունվում է որպես՝ տուրք դիալեկտիկային: Այսպես կոչված՝ այդ «օրինաչափ» հակասություններն անէական են, հարթեցված և բոլոր դեպքերում էլ չեն կարող արգելք հանդիսանալ անխուսափելի առաջընթացին:

Ցույց է տրվում այն առնչությունը, որ կա արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկայի աղճատման, նրանց կապի միտումնավոր մեկնաբանության և սոցիալիզմի նախապես ծրագրված առաջընթացի վերաբերյալ բազմամյա դիրքորոշման միջև: Այսպես սոցիալիզմի օրոք արտադրության եղանակի նկատմամբ մոտեցման մեջ փակվեց «մեթոդաբանություն-տեսություն-պրակտիկա» շրջանը, ինչը ծառայեց երկրի համար մի որոշ քաղաքական ու տնտեսական նկարագիր ստեղծելուն: Առավել զարգացած հասարակական հարաբերությունների հաստատումը

դիտվում էր իբրև արդյունք գիտատեխնիկական առաջադիմության, որն ապահովում է աշխատանքի սոցիալական միասեռությունը սեփականության հարաբերությունների այն կողմում՝ նրանցից անջատ արտադրաուժերի շրջանակներում: Այլ կերպ ասած՝ «պահպանված» սոցիալական անհավասարությունը հարկավոր էր հաղթահարել արտադրաուժերը մինչև արտադրահարաբերությունների մակարդակին հասցնելով, որոնք վաղօրոք (այսինքն՝ անկախ տնտեսվարության մեթոդներից) արդեն առաջադիմական են արտադրության միջոցների ազգայնացման և կոոպերացման պատճառով:

Նշված կապի պատճառը պետք է բացահայտել, հիշելով լենինյան դրույթը տնտեսության նկատմամբ քաղաքականության առաջնային լինելու մասին: 30-ական թվականների սկզբից տասնամյակներ շարունակ մեր երկրում ներքաղաքական իրավիճակին հատուկ է եղել, ինչպես վերը նշվեց, դեմոկրատական ցենտրալիզմի ձևախեղումը: Այդ երևույթը տարբեր ժամանակաշրջաններում ընդունելով զուտ քաղաքական, պետական-վարչական, տնտեսական ձևեր, ծնեց տնտեսության կառավարման համապատասխան ոճ ու մեթոդներ: Վերջինները պահանջում էին իրենց հիմնավորումը և իմաստավորումը, ինչն էլ հենց անդրադարձավ սոցիալիզմի արտադրաեղանակի ուսումնասիրման մեթոդաբանության ու տեսության վրա:

Այսօր սոցիալ-տնտեսական հարցերի լուծման նկատմամբ քաղաքական մոտեցումը բնութագրվում է արմատական տնտեսական ռեֆորմի անհրաժեշտության գիտակցմամբ՝ հասարակական կյանքի համակողմանի դեմոկրատացումով հանդերձ:

Արագացման կոնցեպցիայի մշակումն իսկ հիմնվում է սոցիալիզմի արտադրաեղանակի զարգացման նկատմամբ տարածված մոտեցման քննադատության վրա: Մ. Ս. Գորբաչովի «Ժողովրդի կենդանի ստեղծագործությունը» զեկուցման մեջ ժամանակակից արտադրաուժերի և սոցիալիստական արտադրահարաբերությունների փոխազդեցությունն անվանվել է «արմատական և ակտուալ պրոբլեմ»: Արտադրաեղանակի կողմերի դիալեկտիկան, շեշտվել է զեկուցման մեջ, հանդես է գալիս որպես «երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կարևորագույն աղբյուր», և պետք է քննության առնվի «մեծագույն պատասխանատվությամբ»: Ուղղակիորեն ցույց է տրվել, որ «արտադրաուժերին արտադրահարաբերությունների համապատասխանության մասին հայտնի դրույթի պարզունականացված մեկնաբանությունը» արտացոլում է «դոգմատիկական պատկերացումները, որոնք վատ ծառայություն են մատուցում մեր տեսությանն ու պրակտիկային» (Մ. Ս. Գորբաչով, **Ժողովրդի կենդանի ստեղծագործությունը**, 1985, էջ 15):

Ընդ որում առանձնացվել է «տեխնիկատնտեսական, սոցիալ-քաղաքական, հոգևոր-գաղափարախոսական գործոնների խորացող **փոխներգործության և փոխներթափանցման»** (ընդգծումը մերն է— Թ. Վ.) պրոբլեմը: Խոսքն այն մասին է, որ հաշվի առնվեն, առաջին՝ «խորը փոփոխությունները արտադրահարաբերությունների ամբողջ համակարգում՝ արտադրաուժերի մեջ որակական տեղաշարժերի հիման վրա» և, երկրորդ՝ «արտադրահարաբերությունների անկապտելի միասնությունը աշխատանքի և արտադրության կազմակերպման ձևերի, կառավարման ու պլանավորման, խթանիչ մեթոդների համակարգի հետ՝ մարդկանց կենսագործունեության ընդհանուր սոցիալական կոնտեքստում»: Հենց այստեղ էլ առանձնանում է մեր երկրի սոցիալ-տնտեսական հակասությունների պրոբլեմը (նույն տեղը): Այդ հակասությունները բխում են աշխատանքի և արտադրության բովանդակության ու հասարակական ձևի անխզելի միասնությունից, դրանք բնութագրում են արտադրության գործոնների փոխազդեցության և փոխներթափանցման իրական պրոցեսները:

Արտադրության եղանակի զարգացման նկատմամբ այսպիսի մոտեցումը բավարարում է «էկոնոմիկան դինամիկ, հաշվեկշռված և գիտատեխնիկական առաջընթացի հանդեպ առավելագույնս ընկալունակ» դարձնելու պահանջը, որն առաջ է քաշվել գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմում 1985 թ. հունիսի 11-ին կայացած խորհրդակցությունում (Մ. Ս. Գորբաչով, Կուսակցության տնտեսական քաղաքականության արմատական հարցը: Եր., 1985, էջ 32): Նշված պահանջը վերակողմնորոշում է օբյեկտիվ տնտեսական օրենքների մխոլաստիկական ըմբռնումից դեպի դրանց ստեղծագործական օգտագործումը: Նոր մոտեցումը բացահայտում է արտադրահարաբերությունների իրականացման ձևերի, տնտեսավարման եղանակի ու ձևերի նշանակությունը, հանգեցնում նոր տնտեսական մեխանիզմի ստեղծմանը: Ամրապնդվում է այն բանի ըմբռնումը, թե օբյեկտիվ



տնտեսական օրենքները գործում են մարդկանց գործունեության մեջ բեկվելով միայն և սոսկ տնտեսավարման, արտադրության պրակտիկայում են լցվում կոնկրետ բովանդակությամբ ու ստանում որոշակի ուղղվածություն: Գիտակցվում է, որ «առաջադիմության գլխավոր շարժիչը, նրա ոգին եղել է, կա ու կմնա մարդը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 43): Սուբյեկտը և արտադրաեղանակը ներկայանում են բնական փոխպայմանավորվածության վիճակում:

Նոր սոցիալ-տնտեսական քաղաքականությունը և արտադրաեղանակի դիալեկտիկայի նկատմամբ փոխված մոտեցումը կենսագործվելով, ինչպես հայտնի է, հաղթահարում են տնտեսական հարաբերությունների գոյացած համակարգում ներփակված արգելակման ուժը: Այս պարագայում որքան ավելի բարձր լինի սոցիալիստական էկոնոմիկայի առջև ծառացած խնդիրների գիտական հիմնավորվածության մակարդակը, այնքան ավելի հաջող կիրականանան հասունացած փոփոխությունները: Տնտեսագիտության շրջանակներում ստեղծվում է նոր տնտեսական մեխանիզմի տեսություն, որը կոչված է ապահովելու մեր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը, իմաստավորվում է օբյեկտիվ տնտեսական օրենքների գործողության մեջ շահերի և գործունեության նշանակությունը, հետազոտվում են արտադրահարաբերությունների այն կողմերը, որոնք առաջ են բերել արտադրաուժերի դինամիկայի իջեցում:

Նոր մոտեցման հունով մշակվող տնտեսագիտական ուսմունքը կողմնորոշված է դեպի սոցիալ-տնտեսական շահերը հաշվի առնելը: Նրանում միաձուլված են մարդու՝ որպես աշխատանքի և յուրացման սուբյեկտի, շահերը: Պահանջարկների ու շահերի հարաբերակցությունը բնութագրում է աշխատանքի նկատմամբ վերաբերմունքը ընդունակությունների կառուցվածքի և բաշխման համամասնությունների միջև ձեռք բերված համապատասխանության պայմաններում: Սոցիոլոգներին հատուկ է, դիցուք, որ առավել բարձր վաստակի ձգտումը ոչ միշտ է միանշանակ կերպով բնորոշում մարդկանց՝ աշխատանքի բաժանման մասնակիցների, վարքագիծը: Հանդիպում են այդպիսի վարքագծի զանազան տարբերակներ, ընդ որում նախապատվության ընտրության համար չափանիշ է ծառայում լրացուցիչ եկամտի կամ ազատ ժամանակի, հեղինակության համեմատական արժեքավորությունը: Ոչ նույնորակ աշխատանքը նաև երկընտրանք է ծնում ստեղծագործական ազատ գործունեության հնարավորությունների համար:

Այստեղից հետևում է, որ սուբյեկտի և արտադրաեղանակի իրենց բնական փոխպայմանավորության մեջ ուսումնասիրությունը ենթադրում է առաջինի լիարժեք ներկայությունը և՛ որպես արտադրաուժերի սուբյեկտի, և՛ որպես արտադրահարաբերությունների սուբյեկտի: Արտադրության սուբյեկտի բազմակողմանի, բայց փոխադարձաբար միմյանց հետ կապակցված պահանջմունքներն ու շահերը հաշվի առնելով է միայն հնարավոր հաղթահարել տնտեսական նպատակների, դրանց իրագործման եղանակների ու միջոցների օտարումը մարդուց: Ելնելով մարդու՝ որպես արտադրաուժերի և արտադրահարաբերությունների ընդհանուր սոցիալական սուբստանցիայի, ըմբռնումից, արտադրության՝ իր ամբողջ լիակշռությամբ հանդերձ սուբյեկտիվ գործոնի ունեցած դերն ուսումնասիրելով միայն կարելի է խթանել արտադրաեղանակի այդ կողմերի միասնությունը:

Այդ ճանապարհին գլխավոր քայլը այն բանի գիտակցումն է, որ չկան արտադրաուժեր առանց արտադրահարաբերությունների և ընդհակառակը: Դա բացառում է արտադրաուժերին սոցիալիստական արտադրահարաբերությունների «լիակատար» կամ «ընդհանուր» համապատասխանության մասին կյանքից կտրված պատկերացումը, հանգեցնում փաստական, սոցիալիզմի զարգացման յուրաքանչյուր տվյալ փուլում գործառող արտադրահարաբերությունների ուսումնասիրմանը: Պարզ է դառնում, որ տարբերորակ կենդանի ու առարկայացված աշխատանքի պայմաններում գոյություն ունեն ոչ հավասարաչափ զարգացած, բայց ամեն անգամ աշխատանքին համապատասխանող արտադրահարաբերություններ: Այսպիսով, արտադրահարաբերությունների վիճակը գնահատվում է աշխատանքում՝ արտադրության մեջ դրանց իրացման ընթացքով ու արդյունքներով:

Այսօր գիտական գրականության մեջ ուղղակի խոսվում է այն մասին, որ համընդհանուր ճանաչման արժանացած ելակետային բանաձևը (ըստ որի սոցիալիստական արտադրահարաբերությունները «ասպարեզ են տալիս» արտադրաուժերի

զարգացմանը) ծվատում է արտադրաուժերի կողմերի դիալեկտիկան: Իրավացիորեն շեշտելով, որ այդ բանաձևը արտադրաեղանակի կողմերի դիալեկտիկան ներկայացնում է որպես դիսկրետ (ընդհատ) պրոցես, իսկ արտադրահարաբերությունները՝ որպես «մի ինչ-որ զետեղարան», որտեղ «ասպարեզ», «արանք» կա այդ զետեղարանի շրջանակների՝ արտադրահարաբերությունների, և նրա բովանդակության՝ արտադրաուժերի միջև:

Վերջիններիս զարգացումը մի ինչ-որ փուլում կախում չունի այդ շրջանակներից (արտադրահարաբերություններից): Այդ բովանդակությունը (արտադրաուժերը) պետք է վերացնի, լցնի «արանքը», սպառի «ասպարեզը», որպեսզի այնուհետև նորից շփման մեջ մտնի արտադրահարաբերությունների հետ (տե՛ս А. П. Бутенко. Отказаться от догм, изучать противоречия. ЭКО, 1987, № 4, стр. 135):

Քանի որ սեփականության հարաբերությունները իրականանում են «միմիայն բուն արտադրության միջոցով» (Կ. Մարքս), արտադրահարաբերություններն անհրաժեշտ է քննության առնել՝ ելնելով արտադրաուժերի գործառման բազմազան բնութագծերից: Դրա շնորհիվ արտադրահարաբերությունների վիճակը կարող է գնահատվել ուղղակիորեն կախված այն բանից, թե ինչ չափով է այդ վիճակը զգայուն արտադրաուժերի զարգացման պահանջմունքների նկատմամբ, ինչ չափով է նպաստում արտադրաուժերին ներհատուկ հակասությունների լուծմանը: Եվ եթե արտադրաուժերի զարգացման տվյալ աստիճանում կամ էլ նրանց տվյալ տեղամասում գոյություն ունեն առաջադիմության տեսակետից անընդունելի որոշ արտադրահարաբերություններ, ապա խնդիրը պարզ է. վերափոխել արտադրաուժերը, որոնցով պայմանավորված են այդպիսի հարաբերությունները: Հենց ճիշտ այդպես. ոչ թե արտադրահարաբերությունների վարչական հրամայական մեթոդներով վերափոխում, այլ արտադրաուժերի այնպիսի փոխակերպում, որն ապահովի այլ արտադրահարաբերությունների առաջացումը: Իսկ արտադրաուժերի ժամանակին փոխակերպումը հնարավոր է ժողովրդական տնտեսության՝ արտադրահարաբերությունների կառուցվածքի այդ կարևորագույն օղակի կառավարման ճկուն և առաջադեմ համակարգի առկայության դեպքում, որն էլ իր հերթին վկայում է արտադրական առաջընթացի մեջ արտադրահարաբերությունների ունեցած վճռական դերի մասին:

Ի՞նչն է խանգարում այդպիսի փոխակերպմանը: Արտադրաուժերի այժմ տարածված ըմբռնումը: Այս պատասխանը կարող է թվալ թե՛ հասարակ, թե՛ անսպասելի: Բանն այն է, որ արտադրաեղանակի կողմերի դիալեկտիկական միասնությունն արդյունավետ կարգավորման չի ենթարկվում, քանի դեռ արտադրաուժերը դիտվում են իբրև ինչ-որ մի անբովանդակ նյութատեխնիկական սուբստրատ կամ չեզոք սոցիալական բովանդակությամբ աշխատեղանակ: Արտադրաուժերի այսպիսի ըմբռնման դեպքում էլ հենց ստացվում է, որ արտադրահարաբերությունները հանդես են գալիս ոչ թե իբրև նրանց գոյության, կազմավորման ներքին ձև, այլ իբրև նրանց լրացում, արտաքին թաղանթ, պատյան: Մինչդեռ աշխատելու ընդունակությունը, նրա նկատմամբ պահանջը, ստեղծագործական գործունեությունը արտադրաուժերի բաղադրամասերն են, որ ներհատուկ են աշխատանքի սուբյեկտի և օբյեկտի դիալեկտիկային և ի սկզբանե կազմում են նրա սոցիալական բովանդակությունը: Աշխատանքի (ստեղծագործական գործունեության) այդ սոցիալական բովանդակությունը պատմական կոնկրետ գծեր է ձեռք բերում արտադրահարաբերությունների համակարգի շրջանակներում՝ մի տեսակ կերպարանափոխվելով նրա ազդեցության տակ: Այդ պատճառով էլ արտադրահարաբերությունների համակարգը արտադրաուժերի զետեղարանը չէ, այլ արտադրաեղանակի մի կողմը, որը որոշակի կերպով ձևավորում է արտադրաուժերի ներքին սոցիալական բովանդակությունը, որոշում նրանց սոցիալական ուղղվածությունը:

Արտադրաուժերի հասկացության ծավալի հատումը, գործունեության սուբյեկտի և օբյեկտի դիալեկտիկայի ողջ սոցիալական բովանդակության ամլացումը հասցրեց այն բանին, որ այդ բովանդակությունն սկսեց կապվել միայն բաշխման արտադրահարաբերությունների հետ: Այսպես է աշխատանքի բովանդակությունն անջատվում բուն իսկ աշխատանքից և, վերագրվելով բաշխման հարաբերությունների ոլորտին, մեխանիկորեն դրվում աշխատանքի վրա: Այսպիսին է արտադրաուժերի և արտադրահարաբերությունների դիալեկտիկայի խզման մեխանիզմը, և դրանում մենք տեսնում ենք վերջին տասնամյակների պրակտիկայի բացատրությունը, տասնամյակներ, որոնք տնտեսության բնագավառում հասցրին լճացման, երբ փորձում էին արտադրությունը խթանել, փոխելով արտադրահարաբերություններն ինքնին առանց աշխատանքի հանրայնացման իրական մակարդակը, արտադրաուժերի զարգացման բնույթը և պահանջները հաշվի առնելու:



Իր իսկ աշխատանքի սոցիալական բովանդակությունն այնքան ավելի լիովին է իրականացվում, որքան ավելի ենք առաջ գնացել աշխատանքը կենսական պահանջմունքի վերածվելու ճանապարհով: Այդ ընթացքի անհրաժեշտ փուլը աշխատանքի սոցիալ-տնտեսական անհամասեռության հաղթահարումն է: Այդ պրոցեսի հիմքում ընկած է արտադրաուժերի զարգացումը, նույնորակ աշխատանքի թափանցումը ստեղծագործական գործունեության բոլոր ոլորտները, որը կվերացնի մտավոր և ֆիզիկական աշխատանքի, քաղաքի և գյուղի միջև սոցիալական տարբերությունները: Արտադրահարաբերություններն աշխատանքի սոցիալական բովանդակության վրա ազդում են նրա սոցիալական գործոնների միջոցով, ինչպիսին է, դիցուք, աշխատանքի մղվելու դրդապատճառների, շարժառիթների ամբողջությունը: Այդ պատճառով արտադրահարաբերությունների կատարելագործումը ենթարկված է աշխատանքին, դրսևորվում է աշխատանքի մեջ: Եվ այդ կատարելագործումն այնքան ավելի հաջողված է լինում, որքան ավելի է հասարակայնորեն բաժանված աշխատանքի կառուցվածքը համապատասխանում համահավաք ընդունակությունների կառուցվածքին: Քանի դեռ այդպիսի համապատասխանության պրոբլեմը սևեռուն ուշադրության չի արժանացել և տնտեսագետներն ու սոցիոլոգներն էլ աշխատանքի և արտադրության սոցիալական բովանդակությունը դեռ սահմանափակում են սոսկ բաշխման հարաբերություններով, սոցիալիստական արտադրաուժերի և արտադրահարաբերությունների ընդհանուր սոցիալական էությունը, միասնական սուբստանցիան նշանակալից իմաստ չի կարող ունենալ:

---

# ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾ Է

**Ս. ՄՈՒՍՈՅԱՆ**

1989 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆՎԱՐԻ 12—19-Ը մեր երկրում անցկացվելու է հերթական յոթերորդ համամիութենական մարդահամարը: Յուրաքանչյուր մարդահամար ունի ժողովրդատնտեսական և քաղաքական կարևոր նշանակություն: Այն հատուկ կազմակերպված վիճակագրական հետազոտություն է, որի շնորհիվ մանրամասն ու բազմակողմանի տեղեկություններ են ստացվում բնակչության թվի, տեղաբաշխման, միգրացիայի, կառուցվածքի, վերարտադրության, բնակարանային պայմանների, աշխատանքային ռեսուրսների վերաբերյալ: Առանց այդ տվյալների հնարավոր չէ իրականացնել երկրի և նրա առանձին ռեգիոնների սոցիալ-տնտեսական ու մշակութային կյանքի ընթացիկ և հեռանկարային պլանավորումն ու կառավարումը: Վիճակագրական ընթացիկ հաշվառումները հնարավորություն չեն տալիս վերը նշված հատկանիշներով տեղեկություններ ստանալ բնակչության վերաբերյալ: Դրանք ստացվում են միայն մարդահամարների օգնությամբ:

Ներկայումս մարդահամարներ անց են կացվում աշխարհի երկրների մեծ մասում, բայց միայն սոցիալիստական երկրներում է, որ ստացված նյութերն օգտագործվում են ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների տնտեսական ու սոցիալական պլանների կազմման, էկոնոմիկայի անշեղ աճի ապահովման, բնակչության բարեկեցության բարձրացման համար:

Պետական այդ խոշոր հետազոտությունների անցկացմանը մեծ նշանակություն է տվել Վ. Ի. Լենինը. «Մարդահամարների նյութերը հանրապետություններին անհրաժեշտ են ինչպես արտադրությունը, այնպես էլ սովետական ապարատները պլանաչափորեն կազմակերպելու նպատակով» (**ԵԼԺ, հ. 52, էջ 353—354**): Վ. Ի. Լենինի արտահայտած այս միտքը արդիական է նաև այսօր: Ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման պլանները կազմելու համար բավական չէ իրազեկ լինել միայն բնակչության ընդհանուր թվաքանակին: Անհրաժեշտ են տեղեկություններ նաև այն մասին, թե ինչպիսին է տղամարդկանց և կանանց համամասնությունը, նրանց տարիքային կազմը, որ մասն է ապրում քաղաքում և որ մասը՝ գյուղում, որքան մարդ է աշխատում արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, առևտրի ոլորտում, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում: Անհրաժեշտ է իմանալ նաև, թե քանիսն է ինժեներ, գյուղատնտես, բժիշկ, ուսուցիչ, տնտեսագետ, գիտական աշխատող, որ մասն են կազմում բանվորները և ինչ մասնագիտություն ունեն նրանք, ինչպիսին է նրանց կրթական մակարդակը, երկրում որքան մարդ է սովորում և այլն:

Բնական է, որ հնարավոր չէ կազմել արտադրության և շինարարության զարգացման պլանները, եթե ստույգ տվյալներ չկան աշխատանքային ռեսուրսների թվի և կառուցվածքի վերաբերյալ:

Ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման հնարավորությունը սոցիալիզմի գլխավոր առավելություններից մեկն է կապիտալիզմի նկատմամբ: Պլանային կառավարման շնորհիվ ապահովվում են սովետական էկոնոմիկայի զարգացման կայուն տեմպեր: Մեր երկրում ստեղծված է ժողովրդական տնտեսության պլանավորման միասնական համակարգ, ընդ որում պլանի յուրաքանչյուր բաժնի, հատվածի հիմքում մարդիկ են՝ նյութական բարիքներ և մշակութային արժեքներ ստեղծողները:

Սոցիալիզմի պայմաններում մարդահամարի տվյալներն օգտագործվում են ցանկացած բնագավառի պլանների մշակման համար: Այսպես, բնակչության թվի, սեռի և տարիքի մասին տեղեկություններն անհրաժեշտ են նախադպրոցական, դպրոցական ցանցի զարգացումը պլանավորելու և ժամանակին համապատասխան թվով դաստիարակներ, սպասարկող անձնակազմ, ուսուցիչներ պատրաստելու, ինչպես նաև դասագրքերի և ուսումնական ձեռնարկների լույս ընծայումը պլանավորելու համար: Այդ տվյալներն օգտագործվում են նաև առողջապահության զարգացման պլանավորման՝ հիվանդանոցների, պոլիկլինիկաների, սանատորիաների, հանգստյան տների շինարարության, տարբեր մասնագիտությունների բժշկական կադրերի պատրաստման նպատակով: Դրանք անհրաժեշտ են նոր ձեռնարկությունների շինարարության պլանավորման, արտադրության զարգացման, աշխատանքային ռեսուրսների հաշվեկշռի կազմման համար:

Երկրում, ինչպես նաև նրա առանձին ռեգիոններում ընտանիքների թվի և մեծության, դրանց անդամների սեռի, տարիքի, ազգակցական հարաբերությունների, ինչպես նաև միայնակների վերաբերյալ ստացված տվյալները հնարավորություն են ընձեռում ճշգրիտ պլանավորելու բնակարանային շինարարությունը և մինչև 2000 թ. ընդգրկող ժամանակահատվածում ամեն մի ընտանիքի ապահովելու առանձին տնով կամ բնակարանով:

Արտադրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման և զարգացման համար մանրամասն տեղեկություններ են պահանջվում բնակչության թվի, տեղաբաշխման, աշխատանքային ռեսուրսների կառուցվածքի՝ սեռի, տարիքի, ժողովրդական տնտեսությունում նրանց բաշխվածության և մասնագիտությունների վերաբերյալ: Մարդահամարը տվյալներ կտա ժողովրդական տնտեսությունում աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար՝ հատկապես տնային, անձնական օժանդակ տնտեսությունում, կոոպերատիվներում և անհատական աշխատանքային գործունեությամբ զբաղվածների թվի, կառուցվածքի, կրթական մակարդակի, մասնագիտությունների վերաբերյալ: Առկա աշխատանքային ռեսուրսների հետ շաղկապվում է նաև տնտեսական շրջանների, ռեգիոնների և ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման ցանկացած սոցիալ-տնտեսական կոմպլեքսային ծրագրի մշակումը:

Բնակչության թվի և կառուցվածքի մասին մանրամասն ու ճշգրիտ տեղեկությունները գիտական, գիտահետազոտական կազմակերպություններին, բարձրագույն ուսումնական հաստատությունների աշխատողներին անհրաժեշտ են ժողովրդական տնտեսության և հասարակական հարաբերությունների զարգացման ու կատարելագործման գիտական պրոբլեմների քննարկման, ուսումնասիրության և լուծման համար:

Մարդահամարի տվյալները լայնորեն օգտագործվում են բազմաբնույթ ընտրանքային և սոցիոլոգիական հետազոտությունների համար, որոնց արդյունքները հնարավորություն են տալիս ճիշտ պատկերացում կազմելու ամբողջ հասարակությունում կամ նրա սոցիալական խմբերում առկա օրինաչափությունների մասին:

Մարդահամարի նյութերը ելակետային հիմք են հանդիսանում ավելի ճշգրիտ հաշվարկելու բնակչության թվի և կառուցվածքի ցուցանիշները, իսկ ընթացիկ հաշվառման տվյալների հետ համակցելով, հնարավորություն տալիս իրականացնելու ժողովրդագրական բազմակողմանի վերլուծություններ: Դրանց շնորհիվ կարելի է իրականացնել բնակչության աճը, տեղաբաշխումը, միգրացիան և սոցիալական ոլորտի բազմաթիվ այլ պրոբլեմներն անհրաժեշտ ու ցանկալի ուղղությամբ զարգացնելու ակտիվ ժողովրդագրական քաղաքականություն:

Մարդահամարի և ընթացիկ հաշվառման նյութերի հիման վրա կազմվում են առաջիկա կյանքի միջին տևողության (կամ մահացության) աղյուսակներ: Ստացված տվյալներն օգտագործվում են բնակչության հեռանկարային թվի և կառուցվածքի հաշվարկների, հիվանդությունների և մահացությունների պատճառների ուսումնասիրության, սովետական մարդկանց առողջության բարելավման միջոցառումների մշակման նպատակով: Այդ աղյուսակներով հաշվարկվում է կյանքի առաջիկա միջին տևողության ցուցանիշը, որը բնակչության կենսապայմանների սոցիալ-տնտեսական կարևոր հատկանիշներից է: Մինչև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը կյանքի միջին տևողությունը, որը հաշվարկվել է Ռուսաստանի 1897 թ. առաջին մարդահամարի նյութերի օգտագործմամբ, եղել է ընդամենը 32 տարի: Սովետական իշխանության տարիներին կյանքի միջին տևողությունը մեր երկրում ա-

---

*ՄՈՒՍՈՅԱՆ ՍԱՄՎԵԼ ԳԱՐՍԵՎԱՆԻ— ՀՍՍՀ վիճակագրության պետական կոմիտեի նախագահի տեղակալ։*

վելացել է ավելի քան 2 անգամ և 1985—1986 թթ. տվյալներով կազմում էր 69, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 73,3 տարի (տե՛ս Народное хозяйство за 70 лет. М., 1987, стр. 409):

Մարդահամարի տվյալները ունեն նաև քաղաքական կարևոր նշանակություն, որոնք օգնում են ակնհայտորեն ցույց տալու սոցիալիստական շինարարության բնագավառում մեր հաջողությունները: Առաջիկա մարդահամարի նյութերում իրենց արտացոլումը կգտնեն ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի, ՍՄԿԿ XXVII համագումարի և հետհամագումարյան ժամանակաշրջանի պլենումների որոշումների, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, վերակառուցման, դեմոկրատիայի ընդլայնման և խորացման կոմպլեքսային ծրագրի կենսագործման արդյունքները:

Համեմատելով բնակչության կառուցվածքի վերաբերյալ մարդահամարներից ստացված արդյունքները, կարելի է տեսնել մեր ժողովրդի անցած ամբողջ պատմական ուղին: Իրականացնելով սոցիալիստական ինդուստրացումը, մեր երկիրը սովետական իշխանության տարիներին դարձել է հզոր ինդուստրիալ տերություն: Եթե նախահեղափոխական Ռուսաստանում, 1913 թ. քաղաքային բնակավայրերում ապրում էր երկրի բնակչության 18, ապա 1987 թ. 66 տոկոսը: Չնայած գյուղական բնակչության տեսակարար կշիռը նշված ժամանակաշրջանում նվազել է և կազմում է 34 տոկոս, աշխատանքների մեքենայացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը 1987 թ., 1940 թ. համեմատությամբ, ավելացել է 2,9 անգամ:

Երկրի ինդուստրիալ զարգացման մասին են վկայում բնակչության դասակարգային կազմի փոփոխությունները: Ավելի ու ավելի է մեծանում բանվոր դասակարգի տեսակարար կշիռը: Այսպես, եթե 1959 թ. մարդահամարի տվյալներով հանրապետության բնակչության սոցիալական կառուցվածքում բանվորները կազմում էին 41,1 տոկոս, ապա 1979 թ. տվյալներով այդ թիվը հասել է 64,2 տոկոսի: Միաժամանակ խիստ նվազել է կոլտնտեսականների տեսակարար կշիռը: Ներկայումս բանվոր դասակարգը մեր հասարակության ամենաբազմաքանակ դասակարգն է: Եթե 1940 թ. ՍՍՀՄ-ում բանվորները կազմում էին 23,9 միլիոն, ապա 1986 թ.՝ 82,1 միլիոն մարդ, այսինքն, այդ ժամանակաշրջանում նրանց թիվն աճել է 3,4 անգամ:

Մարդահամարի նյութերը կարևորվում են նաև այն դեպքում, երբ ուսումնասիրում ենք երկրի հաջողությունները կուլտուրական շինարարության բնագավառում: Այսպես, ցարական Ռուսաստանում 9—49 տարեկան հասակի բնակչության գրեթե երեք քառորդն անգրագետ էր: 1913 թ. բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ուներ մոտ 290 հազար մարդ: Ցարական կայսրության ծայրամասային շրջանների շատ ժողովուրդներ գրեթե լրիվ անգրագետ էին: ՍՍՀՄ-ում ավելի քան 40 ազգություններ առաջին անգամ սեփական գիր ու գրականություն ունեցան միայն Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո:

Մինչև հեղափոխությունը Հայաստանում տղամարդկանց 85,5, կանանց 97,1 տոկոսն անգրագետ էր: Սովետական իշխանության տարիներին մեր երկրում, ինչպես նաև Հայաստանում անգրագիտությունը, ըստ վերջին մարդահամարի տվյալների, համարյա վերացած է:

ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թ. փետրվարյան պլենումը լայնորեն քննարկեց երկրում ժողովրդական կրթության և բարձրագույն դպրոցի արմատական վերակառուցման ու կատարելագործման հարցերը: Մեզ մոտ առաջիկա տարիներին նույնպես իրականացվելու է պարտադիր միջնակարգ կրթության ծրագիրը, աճելու է բարձրագույն, միջնակարգ-մասնագիտական և միջնակարգ կրթություն ունեցող անձանց թիվը: Այսպես, եթե 1939 թ. յուրաքանչյուր 1000 բնակչից բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն ունեին 108 մարդ, ապա 1987 թ. այդ թիվը հասել է 708-ի: Ժողովրդական տնտեսության մեջ զբաղվածներին նույն ժամանակաշրջանում բաժին էր ընկնում համապատասխանաբար 123 և 889 մարդ:

Մարդահամարների տվյալները ցույց են տալիս, թե ժողովրդական տնտեսության ինդուստրիալ զարգացման շնորհիվ ինչպես է փոխվել աշխատողների կազմն ըստ զբաղմունքի: Զգալիորեն կրճատվել է ցածր որակավորում պահանջող ձեռքի աշխատանքով զբաղվածների և աճել բարձր որակավորում պահանջող մեքենայացված աշխատանքներում ընդգրկվածների տեսակարար կշիռը:

Գյուղատնտեսության մեջ զբաղված բնակչության կառուցվածքում նույնպես տեղի են ունեցել որակական փոփոխություններ: Գյուղում առաջատար ուժ են դարձել լայն պրոֆիլի մեխանիզատորները: Միայն մեր հանրապետությունում դրանց թիվը



1987 թ. հասել է 10 հազարի, որը 3,1 անգամ ավելի է, քան նախապատերազմյան՝ 1940 թվականին: Աճում է գյուղատնտեսության մեջ զբաղված բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ մասնագետների թիվը: 1970 թ. 8,3 հազարից 1987 թ. նրանց թիվը հասավ 20,3 հազարի: Շարունակ կրճատվում է քաղաքի և գյուղի բնակչության կրթական մակարդակների միջև եղած տարբերությունը:

Սովետական իշխանության տարիներին երկրում ստեղծվել են ժողովրդական մտավորականության ստվարաթիվ կադրեր, որոնք անքակտելիորեն կապված են բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության հետ: Միութենական, ինքնավար հանրապետություններում և մարզերում ստեղծվել է սեփական ազգային մտավորականություն:

Այսօր վերակառուցման, հասարակության դեմոկրատացման, երկրի տնտեսական ու սոցիալական կյանքի բոլոր ոլորտներում մարդկային գործոնի ակտիվացման պայմաններում, մարդահամարի նշանակությունն էականորեն աճել է: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը, 1987 թ. հունվարյան պլենումում նշել է. «Մենք ուզում ենք մեր երկիրը դարձնել զարգացած պետության տիպար, ամենաառաջավոր էկոնոմիկայի, ամենալայն դեմոկրատիայի, ամենամարդասիրական ու բարձր բարոյականության հասարակություն, որտեղ աշխատավոր մարդն իրեն զգար որպես լիիրավ տեր, կարողանար օգտվել նյութական ու հոգևոր մշակույթի բոլոր բարիքներից, որտեղ հուսալի է նրա զավակների ապագան, որտեղ նա կունենար այն ամենը, ինչ հարկավոր է լիարյուն, բովանդակալից կյանքի համար»:

Մենք բոլորս, որպես այդպիսի հասարակություն կառուցողներ, պետք է պարզ պատկերացնենք երկրի և նրա բնակչության զարգացման օրինաչափությունները:

Մարդահամարի կազմակերպված անցկացումը պահանջում է մեր հասարակայնության ակտիվ մասնակցությունը: Չնայած այդ գործը դրված է վիճակագրական մարմինների վրա, սխալ կլինի կարծել, թե հնարավոր է ապահովել ժողովրդատնտեսական ու պետական նշանակության այդպիսի միջոցառման անհրաժեշտ մակարդակը՝ առանց կուսակցական մարմինների, տեղական սովետների, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցության:

Դեռ 1920 թվականին, առաջին մարդահամարի ժամանակ, Վ. Ի. Լենինը նշել է. «Հաշվեգրումների գործը ոչ թե գերատեսչական գործ է, այլ հանրապետության գործը, բոլոր սովետական հիմնարկությունների գործը» (**ԵԼԺ**, հ. 51, էջ 406):

Առաջնորդի այդ ցուցումը հրատապ է նաև այսօր: Առաջիկա մարդահամարն առաջադրված խնդիրներով ավելի բարդ ու ծավալուն է մինչև այժմ կատարված բոլոր մարդահամարներից: Հետևաբար նրա հաջող անցկացման ամենակարևոր պայմանը այդ գործում կուսակցական, սովետական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների ու հիմնարկ-ձեռնարկությունների աշխատողների լայն ներգրավումն է:

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումում լուրջ քննադատական խոսք ասվեց հանրապետությունում բնակչության սոցիալական զարգացման տիրող վիճակի և ժողովրդագրական քաղաքականության մեջ տեղ գտած բացթողումների մասին: Մասնավորապես նշվեց, որ լուրջ պրոբլեմներ են կուտակվել աշխատանքային ռեսուրսների օգտագործման ասպարեզում: Աշխատունակ բնակչության մոտ 18 տոկոսը հանրային արտադրության մեջ զբաղված չէ, որը 1,5 անգամ գերազանցում է միջին միութենական մակարդակը: Շատ շրջաններում, հատկապես Արարատի, Մասիսի, Գուգարքի, Մարտունու, Հոկտեմբերյանի և այլն, յուրաքանչյուր երրորդ բնակիչն ապահովված չէ մշտական աշխատանքով: Տեղին է նշել, որ դրա հետևանքով հանրապետությունից յուրաքանչյուր տարի 20—25 հազար մարդ չպլանավորված ձևով մեկնում է Միության տարբեր բնակավայրեր աշխատանք որոնելու: Հանրապետությունում ստեղծված իրադրությունը հանգեցրել է նրան, որ սկսված 80-ական թվականներից բնակչության միգրացիոն շարժի բալանսը բացասական է. այն 1987 թ. կազմեց 14 հազար մարդ:

Հաճախ շրջանային սովետները հարց են բարձրացնում այն մասին, որ հանրապետության վիճպետկոմի կողմից տրվող ընթացիկ հաշվառմամբ բնակչության թիվը չի համապատասխանում իրենց շրջաններում գոյություն ունեցող իրական թվի հետ: Ընթացիկ հաշվառմամբ բնակչության թիվը հաշվարկվում է մարդահամարով ստացված թվին ավելացնելով բնական աճը (յուրաքանչյուր տարում ծնվածների ու մահացածների տարբերությունը) և միգրացիոն աճը (եկողների ու մեկնողների տարբերությունը): Դա հիմք է տալիս պնդելու, որ տեղական սովետները պետք է առա-

վելագույն հետևողականություն ցուցաբերեն բնակչության հաշվառման գործին համապատասխան օղակներում:

Բացի այդ, հանրապետությունից չպլանավորված աշխատուժի տեղաշարժը նույնպես իր բացասական ազդեցությունն է թողնում: Քաղաքացիներն իրենց հիմնական բնակավայրի գրանցումից դուրս չեն գալիս և մեկնելով Միության այլ շրջաններ, այնտեղ գրանցվում են և վերադառնալով՝ գրանցումից դուրս չեն գալիս, արդյունքը լինում է այն, որ Միության մասշտաբով բնակչության հաշվեկշիռը կազմելիս այդ քանակությամբ մեր հանրապետության բնակչությունը նվազեցվում է և ավելացվում է այն հանրապետությունների բնակչությունը, որտեղ նրանք եղել են գրանցված: Պետք է խոստովանել, որ այս ուղղությամբ հանրապետությունում ձեռնարկված միջոցառումները սակավ արդյունավետ են:

Մեզ դեռևս չի հաջողվել ապահովել գիտականորեն հիմնավորված ժողովրդագրական քաղաքականություն ինչպես հանրապետությունում, այնպես էլ նրա առանձին ռեգիոններում: Անհանդուրժելի է այն իրողությունը, երբ հանրապետության բազմաթիվ գյուղական բնակավայրերում բնակչության թիվն ինտենսիվորեն նվազում է: Կենսական անհրաժեշտություն է ակտիվ ժողովրդագրական քաղաքականություն իրականացումը, այլապես շատ գյուղեր կանցնեն արդեն վերացված բնակավայրերի շարքը:

Ի տարբերություն 1979 թվականի, այս անգամ մարդահամարի թերթում ընդգրկված են 25 հարցեր (նախորդ 16-ի փոխարեն): Առաջին հարցի՝ «Առնչությունն ընտանիքի գլխավորի հետ» ավանդական ձևակերպումը փոխվել է և ձևակերպված է այսպես. «Առնչությունը առաջինը գրված ընտանիքի անդամի հետ»: Քանի որ ամուսինների լրիվ իրավահավասարության պայմաններում «ընտանիքի գլխավոր» հասկացությունը հիմնականում կորցրել է իր սկզբնական նշանակությունը: Երբեմն հարցման ընթացքում ամուսինները, հատկապես երիտասարդ, դժվարանում են որոշել, թե ով է նրանցից ընտանիքի գլխավորը: Նոր ձևակերպումն արդեն փորձարկվել է 1985 թվականի ընտրանքային սոցիալ-դեմոգրաֆիական հետազոտության ժամանակ և համարվել է ընդունելի:

«Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների մասին» որոշումը կյանքում ճիշտ իրականացնելու համար մտցվել է հարց. «Պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարաններ» ավարտելու վերաբերյալ: Այդ մասին ստացած տվյալները հնարավորություն կտան ուսումնասիրելու, թե որքան արդյունավետ է գործում պրոֆտեխնիկական ուսուցման համակարգը:

Առաջին անգամ պարունակվում են նաև հարցեր մարդկանց բնակարանային պայմանների մասին: Ստացված տվյալները հիմք կհանդիսանան մեր երկրում բնակարանային պրոբլեմի լուծման ծրագրի մշակման և հաջող կատարման համար: Ընդհանուր առմամբ մարդահամարի թերթում նոր հարցերի ընդգրկումը (թվով ինը) բացատրվում է բնակչության ժողովրդագրական, սոցիալ-տնտեսական և կուլտուրական մակարդակի էական տեղաշարժերով և այդ ասպարեզներում գիտականորեն հիմնավորված ծրագրերի մշակման անհրաժեշտությամբ:

Մեր հանրապետությունում տեղի ունեցած ավերիչ երկրաշարժի հետևանքով, որն ընդգրկեց նրա տարածության ավելի քան 43 տոկոսը և բնակչության 32 տոկոսը, ունեցանք վիթխարի զոհեր: Այս հանգամանքը զգալի չափով դժվարացրել է մարդահամարի նախապատրաստական վերջին փուլի անցկացումը: Փաստորեն 18 շրջաններում և 3 քաղաքներում հնարավոր չէ հաստատված կարգով մարդահամար կատարել: Այդ պատճառով ՀՍՍՀ վիճպետկոմը հրատապ միջոցներ է ձեռնարկում մարդահամարը կազմակերպված ձևով անցկացնելու համար, քանի որ միայն այդ միջոցով հնարավոր կլինի պարզել տարերային աղետի զոհերի իրական չափը և չնախատեսված միգրացիայի հետևանքները:

Մարդահամարի արդյունքները հնարավորություն կընձեռեն վեր հանելու հանրապետությունում կուտակված շատ պրոբլեմներ ու նախանշելու դրանց լուծման ուղիները:

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ՍՊԱՌՄԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ԿԱՌՈՒՑՎԱԾՔՆ ՈՒ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

**Ն. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**

ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՈՒ ՏՆՏԵՍԱԿԱՆ նշանակություն ունեցող խնդիր է աշխատանքի վարձատրման համակարգի ներգործունության բարձրացումը, աշխատանքի արտադրողականության մակարդակից աշխատավարձի անմիջական կախվածությունը: Հասարակության զարգացման շահերը լուրջ վերափոխումներ են պահանջում աշխատանքի պայմանների, բնույթի ու էության մեջ, քանի որ մարդկանց բազմազան պահանջմունքների թվում ավելի մեծ չափով է առաջին պլան մղվում բովանդակալից, ստեղծագործական աշխատանքը խթանելու խնդիրը:

Խոշոր միջոցառումներ են իրականացվում տարիֆային դրույքների ու ռոճիկների բարձրացման նպատակով: Կուսակցությունն անհրաժեշտ է համարում նյութական արտադրության ճյուղերում այդ աշխատանքներն իրականացնել սեղմ ժամկետներում: Մինչև հնգամյակի վերջը դրանք կավելանան միջին հաշվով 25—30 տոկոսով: Զգալի միջոցներ են հատկացվում ոչ արտադրական ճյուղերում աշխատանքի վարձատրման համակարգի վերակառուցման նպատակով: Ընթացիկ հնգամյակում բարձրանում են կուլտուր-լուսավորական հիմնարկների, բարձրագույն դպրոցի աշխատողների դրույքներն ու ռոճիկները: Այս միջոցառումների շնորհիվ բանվոր-ծառայողների միջին ամսական աշխատավարձը կհասնի 215—220 ռուբլու:

Ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի կիրառմանը զուգընթաց շարունակ աճում է սպառման հասարակական ֆոնդերի դերը: Մինչև հնգամյակի վերջը դրանք զգալիորեն կավելանան և բնակչության մեկ շնչի հաշվով 1990 թ. կկազմեն ավելի քան 600 ռուբլի: Այսպիսով, քայլ առ քայլ իրականացվում է ժողովրդական տնտեսության վերակառուցման արդի պայմաններում կուսակցության առաջադրած գլխավոր խնդիրը՝ ժողովրդի բարեկեցության բարձրացումը, մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումը:

Սոցիալիզմի ժամանակ շատ անհատական պահանջմունքներ ձեռք են բերում հասարակական բնույթ: Այսպես, եթե կապիտալիզմի պայմաններում բնակչության կրթությունը, բուժսպասարկումը, բնակարանով ապահովվածությունը, երեխաների դաստիարակությունը կախված է յուրաքանչյուրի եկամուտներից, ապա սոցիալիստական հասարակարգում մարդկանց սոցիալ-կուլտուրական և կենցաղային շատ պահանջմունքների բավարարման հոգսը հասարակությունը վերցնում է իր վրա:

Սոցիալ-կուլտուրական մի շարք կարևորագույն պահանջմունքների բավարարումն իրականացվում է անկախ աշխատանքի վարձատրության մակարդակից: Այստեղ կարևորվում է սոցիալիստական բաշխման հիմնական սկզբունքի զուգակցումը սպառման հասարակական ֆոնդերի հնարավորությունների հետ: Այդ ֆոնդերը նյութական և հոգևոր բարիքների ամբողջությունն է, որ սոցիալիստական պետությունը տրամադրում է բնակչությանը՝ անվճար կամ արտոնյալ պայմաններով: Սպառման հասարակական ֆոնդերը (ՍՀՖ) ընդգրկում են թոշակները, կենսաթոշակները, նպաստները, արձակուրդավճարները, անվճար ուսուցման ու բուժօգնության, մանկականնախադպրոցական հիմնարկների, առողջարանների, հանգստյան տների, ակումբների, գրադարանների պահպանման և մի շարք այլ ծախսեր: Ընդհանուր առմամբ

---

*ԱԼԵՔՍԱՆՅԱՆ ՆԱԻՐԱ ՎԱՆՅԱՅԻ— ՀՍՍՀ վիճպետկոմի ժողտնտեսության բալանսի բաժնի տնտեսագետ*

ՍՀՖ-երը իրենցից ներկայացնում են դրամական վճարումներ (47 տոկոս) և նյութական բարիքներ ու անվճար ծառայություններ (53 տոկոս):

Լենինը ՍՀՖ-երի գծով կատարվող միջոցառումները դիտել է իբրև «Կոմունիզմի ծիլերի» նմուշներ (ԵԼԺ, հ. 39, էջ 31): Դրանց նկատմամբ հոգատար մոտեցումը նա համարել է կուսակցության ու պետության առաջնահերթ պարտականությունը: Այսօր կուսակցությունը հաստատորեն է վարում հանրային ֆոնդերի հետագա աճի և ավելի արդյունավետ օգտագործման կուրսը: Մինչև հնգամյակի վերջը դրանց ծավալը կմեծանա 20—23 տոկոսով: Սպառման հասարակական ֆոնդերը կարևոր դեր են խաղում ժողովրդի կյանքի պայմանների բարելավման, սոցիալական արդարության սկզբունքների հաստատման ասպարեզում: Այդ գործոնը ամենևին էլ հակասության մեջ չի գտնվում ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի և համատարած համահարթման միտումների դեմ պայքարի հետ: ՍՀՖ-երը մեծ նշանակություն ունեն սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի իրագործման համար: Դրանք զգալիորեն ավելացնում են աշխատավորների ռեալ եկամուտները, քանի որ հասարակության յուրաքանչյուր անդամ (երեխաներից մինչև ծերերը) այս կամ այն չափով օգտվում են այն ծառայություններից, որոնք կատարվում են այդ ֆոնդերի հաշվին:

Մեր երկրում ՍՀՖ-երի բաշխումը կատարվում է դրամական եկամուտների և անվճար կամ արտոնյալ պայմաններով մատուցվող ծառայությունների ձևով: Բանվորների, ծառայողների ու կոլտնտեսականների ռեալ եկամուտներն ավելանում են ինչպես ՍՀՖ-երից տրվող միջոցների (թոշակ, կենսաթոշակ, նպաստ, առողջարանների, հանգստյան տների ուղեգրեր և այլն), այնպես էլ անուղղակի եկամուտների (անվճար ուսուցում, բժշկական օգնություն, մշակութային օջախների պահպանում և այլն) հաշվին: Բավական է ասել, որ նախադպրոցական հիմնարկներում մեկ երեխայի համար տարեկան ծախսվում է մոտ 450 ռուբլի, որի 81 տոկոսը՝ 364 ռուբլի, իր վրա է վերցնում պետությունը, և միայն 19 տոկոսն է բաժին ընկնում ծնողներին: Յուրաքանչյուր դպրոցականի վրա ծախսվում է 100—120 ռուբլի (երկարօրյա դպրոցներում՝ 180—200 ռուբլի):

Դրամական եկամուտները տրվում են ուղղակիորեն, անհատական ձևով, ծառայությունները կատարվում են կոլեկտիվ, համատեղ օգտագործման համար (ուսուցում, բուժօգնություն): Վերլուծելով դրամական եկամուտների ու ծառայությունների առանձնահատկությունները, նկատում ենք, որ դրանց մի մասը տրվում է սպառողներին, հաշվի առնելով նյութական վիճակը (օրինակ, նյութապես թույլ ապահովված ընտանիքի երեխային անվճար ուսուցում գիշերօթիկ դպրոցում), իսկ մյուս մասը բաշխվում է հավասարապես (բուժում, ուսուցում). ՍՀՖ-երից բնակչությունն օգտվում է նաև բնակարանների շահագործման ժամանակ: Յուրաքանչյուր 15 քառակուսի մետր բնակելի ֆոնդի հաշվով ընթացիկ և կապիտալ նորոգման համար պետության ամսական ծախսերը 2,5 անգամ գերազանցում են բնակվարձը: Զգալի միջոցներ են ծախսվում մշակութային հիմնարկների պահպանման նպատակով: Օրինակ, գրադարանից օգտվող յուրաքանչյուր ընթերցողի սպասարկումը պետության վրա տարեկան նստում է 30 ռ.:

ՍՀՖ-երի ձևավորման աղբյուրը ազգային եկամտի սպառման ֆոնդի այն մասն է, որն ստացվում է այդ ֆոնդից ըստ աշխատանքի տրվող սպառման անհատական ֆոնդերը փոխհատուցելուց հետո: Հաշվարկված է, որ ազգային եկամտի սպառման ֆոնդի մեջ ըստ աշխատանքի տրվող սպառման անհատական ֆոնդերի ամբողջ գումարը 80 տոկոսն է, իսկ 20 տոկոսը կազմում են ՍՀՖ-երը: ՍՀՖ-երի աղբյուրների՝ կենտրոնացված (համապետական ֆոնդեր) և ապակենտրոնացված (պետական, կոոպերատիվ, հասարակական կազմակերպությունների, կոլտնտեսությունների) ֆոնդերի բաժանելը պայմանավորված է սոցիալիզմի ժամանակ գոյություն ունեցող սեփականության երկու ձևերով: Բնակչության սոցիալ-կուլտուրական և կենցաղային պահանջմունքների բավարարման գործում մեծ նշանակություն ունեն համապետական ֆոնդերը, որոնք կազմում են ամբողջ ֆոնդերի 80 տոկոսը: Երկրորդ խումբ ֆոնդերը հնարավորություն են տալիս որոշակիորեն ապահովել ձեռնարկության լավագույն աշխատողների գերադասությունը դրամական վճարումների ժամանակ: Պետական ձեռնարկության մասին օրենքի համաձայն այստեղ ՍՀՖ-երի աղբյուր են հանդիսանում տնտեսական խթանման ֆոնդերը, որոնք ձևավորվում են շահույթի



հաշվին: Դրանց օգտագործման կարևորագույն ուղղություններից է սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության ֆոնդը, որի շուրջ կեսը ձեռնարկությունները հատկացնում են բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարությանը:

ՍՀՖ-երի կառուցվածքը սովորաբար դասակարգվում է ըստ մի քանի հատկանիշների: Ինչպես նշվեց, ըստ ձևավորման աղբյուրների ՍՀՖ-երը լինում են կենտրոնացված և ապակենտրոնացված: Ըստ վճարման ձևի դրանք դրամական վճարումներ են և անվճար ծառայություններ: Եթե 1985 թ. Հայկական ՍՍՀ-ում սպառման հասարակական ֆոնդերը կազմել են 1318,3 մլն ռուբլի, որի մոտ 55 տոկոսը բաժին էր ընկնում անվճար ծառայություններին, մնացածը՝ դրամական վճարներին, ապա 1990 թ. այդ ֆոնդը կկազմի 1683 մլն ռուբլի:

Ներկայումս մեծ նշանակություն է ստանում ՍՀՖ-երի խմբավորման հարցը՝ կախված դրանց բաշխման եղանակներից: Չէ որ ՍՀՖ-երը բաշխվում են ինչպես ըստ աշխատանքի, այնպես էլ ըստ պահանջմունքների: ՍՀՖ-երից կատարվող դրամական վճարումների հիմքում ընկած է նախկինում կատարած աշխատանքը: Հետևաբար, դրամական վճարումները կարգավորվում են ըստ աշխատանքի բաշխման սկզբունքով, բայց ոչ թե ուղղակիորեն, այլ անուղղակի ձևով, կոնկրետ նորմատիվների միջոցով, ելնելով աշխատանքային ստաժի մեծությունից: Մյուս կողմից ՍՀՖ-երը հատկացվում են ըստ պահանջմունքների: Դա վերաբերում է մասնավորապես անվճար ծառայություններին: ՍՀՖ-երի գերակշռող մասի (մոտ 60 տոկոս) բաշխումը կապված չէ աշխատավարձի հետ: Դա հիմնականում վերաբերում է բնակչության սոցիալական ու հոգևոր պահանջմունքների բավարարման նպատակով կատարվող անվճար ծառայություններին: Մնացածը բաշխվում է դրամական վճարումների ձևով: Դա հետևանք է այն բանի, որ վերջիններից մեծ մասամբ օգտվում են թոշակառուները, իսկ առաջիններից՝ բանվոր-ծառայողները, որոնք, բնականաբար, ավելի մեծ թիվ են կազմում, քան թոշակառուները:

Դրամական եկամուտների ու անվճար ծառայությունների ծավալը պայմանավորված է ընտանիքի մեծությամբ: Ընտանիքի չափերի աճին համապատասխան ավելանում է անվճար ծառայությունների տեսակարար կշիռը և փոքրանում դրամական եկամուտներինը: Հետևաբար, անվճար ծառայությունները կատարվում են հօգուտ բազմանդամ ընտանիքների, իսկ դրամական վճարումները՝ հակառակը:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ՍՀՖ-երի և մեկ շնչին ընկնող եկամուտների մեծության միջև առկա է փոխկապակցվածություն: Որքան փոքր են եկամուտները, այնքան մեծ է դրանց ընկնող անվճար ծառայությունների տեսակարար կշիռը և հակառակը, որքան մեծ են եկամուտները, այնքան մեծ է դրամական վճարումների տեսակարար կշիռը:

Ընտանիքի չափերի մեծացման հետ մեկտեղ աճում է նաև անվճար ծառայությունների բաժինը մանկական հիմնարկներում: Դա ՍՀՖ-երի հիմնական առանձնահատկություններից մեկն է, որի շնորհիվ այդ ֆոնդերի մի մասը բաշխվում է ըստ պահանջմունքների (աճող սերնդի պահպանում և դաստիարակում): Դրա հետևանքով ընտանիքների եկամուտների մերձեցում է կատարվում:

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ՍՀՖ-երից կատարվող անվճար ծառայությունները (բացառությամբ բուհ-երի) բաշխվում են հօգուտ քիչ եկամուտներ ունեցող ընտանիքների: Այսպես, եթե մեկ շնչին 25 ռ. եկամուտ ունեցող ընտանիքների՝ դպրոցական ծառայությունների տեսակարար կշիռը 40 տոկոս է, ապա 125 ռուբլի եկամուտով ընտանիքներինը՝ 8,5 տոկոս (միջինը 23,8 տոկոս): Եթե առաջին խումբ ընտանիքների գիշերօթիկ դպրոցների նկատմամբ պահանջը 4,4 տոկոս է, ապա 60 ռուբ. և ավելի շնչական եկամուտ ունեցող ընտանիքներն առհասարակ չեն օգտվում այդ ծառայություններից: Թույլ ապահովված ընտանիքների օգտին են կատարվում նաև մանկական հիմնարկների, տեխնիկումների և պրոֆտեխնիկական ուսումնարանների գծով կատարվող ծառայությունները:

Այսպիսով, սոցիալիստական հասարակարգում ՍՀՖ-երի գլխավոր ֆունկցիան բնակչության անձնական օգտագործման ոլորտում գոյություն ունեցող անհավասարության հաղթահարումն է, քանի որ նյութական ու հոգևոր բարիքների մեծ մասը բաշխվում է հօգուտ բազմանդամ և թույլ ապահովված ընտանիքների:

Արդի պայմաններում «ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի ամրապնդման հետ միաժամանակ կշարունակվի սպառման հանրային ֆոնդերի հետևողական զար-

գացումը, որոնք բացառիկ դեր են խաղում սովետական մարդկանց կյանքում: Հնգամյակի ընթացքում դրանք զգալիորեն կավելանան և բնակչության մեկ շնչի հաշվով 1990 թվականին կկազմեն ավելի քան 600 ռուբլի» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 362)**:

Սոցիալիստական հասարակարգը մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահում աճող սերնդի պահպանման ու դաստիարակության գործը: Աշխատուժի վերարտադրության այդ կարևոր օղակը գործում է ինչպես ընտանեկան բյուջեի, այնպես էլ ՍՀՖ-ի հաշվին: Երեխաների պահանջմունքների բավարարումը համաժողովրդական, համապետական գործ է: Միջնակարգ կրթությունն ամբողջությամբ իրականացվում է ՍՀՖ-ի միջոցով: Աճող սերնդի պահպանմանն ու դաստիարակմանն ուղղվող ծախսերը կազմում են սպառման հասարակական փոնդերի 30 տոկոսը: Չնայած նրան, որ այս ծախսերի տեսակարար կշիռը համարյա անփոփոխ է մնում, դրանց բացարձակ ծավալն անընդհատ աճում է: 1985 թ. հանրապետությունում այդ նպատակով ծախսվել է 310,6 մլն ռուբլի, հնգամյակի վերջում այն կհասնի 401,5 մլն ռուբլու: Աճը այդ ժամանակաընթացքում կկազմի 129,3 տոկոս:

ՍՀՖ-երից նպաստներ են հատկացվում նաև հղիության և ծննդաբերության ժամանակ, միայնակ, բազմազավակ մայրերին, նորածիններին խնամողներին: Հղի կանայք, որոնք աշխատում են ժողովրդական տնտեսությունում, ՍՀՖ-երի հաշվին ստանում են վճարովի արձակուրդ 112 օրվա սահմաններում: Երկու և ավելի երեխաներ ծնվելիս արձակուրդի տևողությունն ավելանում է: Հղիության շրջանում և ծննդաբերությունից հետո մայրն ու նորածինը վերցվում են մասնագետ բժիշկների հսկողության տակ: Նրանց ՍՀՖ-երի հաշվին ցույց է տրվում անվճար բուժօգնություն: ՍՄԿԿ XXVII համագումարում խնդիր դրվեց «փուլ առ փուլ, ըստ երկրի շրջանների, ավելացնել մինչև 1,5 տարեկան երեխայի խնամքի համար մայրերին տրվող մասնակիորեն վճարովի արձակուրդի տևողությունը, միաժամանակ լրացուցիչ անվճար արձակուրդի իրավունք տալով մինչև 6 ամիս ժամկետով, զարգացնել հղի կանանց համար մասնագիտացված պրոֆիլակտորիումների ցանցը, ավելացնել նախածննդյան արձակուրդի, ինչպես նաև հիվանդ երեխային խնամելու համար տրվող վճարովի արձակուրդի տևողությունը, մտցնել դեղորայքի անվճար հանձնում մինչև 3 տարեկան երեխաների համար» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 433):

Աճող սերնդի պահպանման և դաստիարակման նպատակով են կատարվում նաև պիոներական ճամբարներին տրվող ծախսերը, ոչ արտադրական փոնդերի փոխհատուցումը և այլն:

ՍՀՖ-երի օգտագործման հաջորդ կարևոր ուղղությունը կադրերի պատրաստումն է: Այս պրոբլեմը նույնպես ունի համապետական նշանակություն: Առանց դրա լուծման խոսք անգամ լինել չի կարող խոշոր մեքենայական արտադրության, տեխնիկական առաջընթացի, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման և, վերջապես, մարդու համակողմանի զարգացման վերաբերյալ: Կադրերի պատրաստման պրոբլեմը սոցիալիստական հասարակությունը վերցրել է իր վրա՝ կատարելով համապատասխան ծախսումներ ՍՀՖ-երից: Այդ նպատակով Հայկական ՍՍՀ-ում կատարվող ծախսերը կազմում են աճող սերնդի պահպանման ու դաստիարակման միջոցների մոտ 30 տոկոսը և ամբողջ ՍՀՖ-երի 15 տոկոսը: Եթե 1975 թ. կադրերի պատրաստմանը հատկացվել է 95 մլն ռուբլի, 1980 թ. 135,7, 1985 թ.՝ 179,0 մլն ռուբլի, ապա ընթացիկ հնգամյակի վերջում այն կհասնի 230,9 մլն ռուբլու: Ներկայումս բուհերի յուրաքանչյուր ուսանողի համար պետությունը տարեկան ծախսում է մոտ 1000 ռ., միջնակարգ ուսումնական հաստատություններում՝ 600 ռուբլի:

Սովետական իշխանության տարիներին Հայկական ՍՍՀ-ում աննախընթաց վերելք ապրեց բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական կրթությունը: 1981—1985 թթ. 1940—1941 թթ. համեմատ Հայաստանի բուհերում սովորողների թիվն աճել է ավելի քան 5,5 անգամ: Այս խոշոր նվաճման շնորհիվ մեր հանրապետությունը 10.000 բնակչին ընկնող ուսանողների թվով ՍՍՀՄ-ում գրավում է առաջին տեղը: Մինչդեռ 10.000 բնակչին ընկնող միջնակարգ-մասնագիտական հաստատություններում սովորողների թվով մեր հանրապետությունը հետ է մնում Միության միջինից: Դա առաջ է բերել անհամապատասխանություն բարձրագույն կրթությամբ մասնագետների և տեխնիկների պատրաստման միջև: Սակայն ժողովրդական տնտեսությունը զգում է բոլոր տեսակի մասնագետների կարիքը: Այս ճեղքվածքը հանգեցնում



է մասնագետների ոչ ռացիոնալ օգտագործման, երբ հաճախ բարձրագույն կրթությամբ մասնագետը կատարում է այնպիսի աշխատանք, որը կարող է անել միջնակարգ-մասնագիտական կրթություն ունեցողը: Սրանից հետևում է, որ առաջիկայում միջնակարգ-մասնագիտական կրթությունը մեր հանրապետությունում պետք է զարգանա ավելի արագ տեմպերով:

ՍՀՖ-երի հաշվին հանրապետության ուսանողների շուրջ 75 տոկոսը ստանում է կրթաթոշակ: ՍՀՖ-երն ուղղվում են նաև ասպիրանտուրայի համակարգում բարձրորակ մասնագետների պատրաստմանը: Եթե 1940 թ. Հայաստանի բուհերում ու գիտական հիմնարկներում սովորում էր 142 ասպիրանտ, ապա 1985 թ. այդ թիվը հասավ 1500-ի: ՍՀՖ-երից զգալի միջոցներ են հատկացվում պրոֆտեխնիկական ուսումնարաններում կադրերի պատրաստման համար:

ՍՀՖ-երի հիմնական խնդիրներից է բնակչության հանգստի և առողջության պահպանումը: Մեր հանրապետությունում բնակչության առողջության և հանգստի պահպանման ծախսերը կազմում են ՍՀՖ-երի 30 տոկոսը: Բացարձակ գումարով 1980 թ. այդ նպատակով ծախսվել է 294,2 մլն ռուբլի, 1985 թ. 360,1 մլն ռ., 1990 թ. այն կհասնի 476,3 մլն ռուբլու: Ներկայումս չորս անձից բաղկացած ընտանիքի բուժսպասարկման համար ՍՀՖ-երից տարեկան միջին հաշվով ծախսվում է 350 ռուբլի: Հիվանդանոցային մեկ հիվանդի պահպանման համար ՍՀՖ-երից օրական ծախսվում է 8—10 ռ., ամսական՝ 250—300 ռուբլի: ՍՀՖ-երից հսկայական միջոցներ են հատկացվում առողջարանային բուժման համար: Աշխատողների մեծ մասը վճարում է ուղեգրերի արժեքի միայն 30 տոկոսը կամ այն ստանում է անվճար:

Բնակչության առողջության և հանգստի պահպանման կարևոր պայման են բանվոր-ծառայողներին տրամադրվող հերթական արձակուրդները և դրանց համար վճարումները: 1975 թ. արձակուրդավճարները հանրապետությունում կազմել են 82 մլն ռուբլի, 1985 թ.՝ 159,6, 1990 թ. դրանք կհասնեն 163,3 մլն ռուբլու: ՍՀՖ-երի ծախսերի կարևոր հոդված է ժամանակավոր անաշխատունակության համար նպաստների տրամադրումը: Բանվոր-ծառայողների ընդհանուր թվաքանակի, աշխատավարձի փոնդի աճի հետ մեկտեղ տարեցտարի ավելանում են այդ նպատակով կատարվող հատկացումները: 1970 թ. այդ ծախսերը կազմել են 20,0 մլն ռ., իսկ 1990 թ.՝ 56,2 մլն ռուբլի: Նպաստների մեծացմանը զուգընթաց պետությունը հոգ է տանում նաև անաշխատունակ ժամանակաշրջանի կրճատման համար՝ բուժսպասարկման բարելավման, կուլտուր-լուսավորական և սանիտարական աշխատանքների, անվտանգության տեխնիկայի ապահովման միջոցով: Անաշխատունակության նպաստների չափերը հիմնականում համապատասխանում են աշխատավարձին, որը սերտ կապ է ստեղծում աշխատանքային ստաժի, վարձատրության և նպաստների չափի միջև:

Ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում մեր երկրում ֆիզկուլտուրայի ու սպորտի զարգացումը, որպես բնակչության հանգստի կազմակերպման և առողջության ամրապնդման կարևոր միջոցի: Ֆիզիկական դաստիարակության համար, բացի պետբյուջեից, օգտագործվում են նաև ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, արհմիությունների, հասարակական մյուս կազմակերպությունների միջոցները: Ներկայումս մեր երկրում սպորտով զբաղվում է 60 մլն մարդ:

Սովետական պետությունը ՍՀՖ-երի ամբողջ ծավալի քառորդ մասն ուղղում է հասարակության անաշխատունակ անդամների և ծերերի սոցիալական ապահովությանը: Այդ կարգի քաղաքացիների թոշակային ապահովության համակարգի հիմնական աղբյուրը սոցիալական ապահովության և ապահովագրության փոնդերն են: Դրանց հիմնական մասը (70 տոկոսը) տրվում է կենսաթոշակների ձևով: ՍՀՖ-երի հաշվին պահպանվում են ծերերի և հաշմանդամների տները: Հայկական ՍՍՀ-ում անաշխատունակ և ծեր քաղաքացիների պահպանմանն ուղղվող ծախսերը 1980 թ. կազմել են 277,7 մլն ռուբլի, 1985 թ.՝ 351,5, 1990 թ. դրանք կհասնեն 446,2 մլն ռուբլու:

ՍՀՖ-երն օգտագործվում են նաև այնպիսի սուր սոցիալական խնդրի լուծման համար, ինչպիսին բնակարանային պրոբլեմն է: Հայաստանում այդ նպատակով կատարվող ծախսումները կազմում են ՍՀՖ-երի ծավալի մոտ 8 տոկոսը: Բացարձակ գումարով այդ ծախսումները 1980 թ. կազմել են 73,4 մլն ռ., 1985 թ. 91,8 մլն ռուբլի: Հնգամյակի վերջում դրանք կհասնեն 128,1 մլն ռ.: Այս միջոցների կեսից ավելին ուղղվում է բնակելի փոնդի պահպանմանը, քանի որ մաշվածքը չի փոխհատուցվում

բնակվարձի ձևով բնակչության կատարած վճարներով: Բնակվարձը նույնիսկ չի ծածկում ընթացիկ նորոգման ծախսերը և կազմում է բանվոր-ծառայողների եկամտի 4—5 տոկոսը: Միայն վերջին 10 տարում հանրապետության բնակելի ֆոնդը գյուղում ու քաղաքում ավելացել է 70 տոկոսով: Ջրմուղ-կոյուղով ապահովված է բնակելի ֆոնդի 85 տոկոսը, ջրամատակարարմամբ՝ 82 տոկոսը, տաք ջրամատակարարմամբ՝ 3, բնական գազով՝ 76 տոկոսը:

ՍՀՖ-երի օգտագործման մյուս կարևոր ուղղությունը կուլտուր-լուսավորական կազմակերպությունների պահպանումն է: Դա ընդգրկում է գրադարանների ու ակումբների, կինոթատրոնների, թանգարանների, կինոսարքավորումների և այլնի խիտ ցանցը:

Այսպիսով, սոցիալիստական հասարակարգում սպառման հասարակական ֆոնդերը իրենց սոցիալ-տնտեսական ֆունկցիաներով նպաստում են անձնական սպառման ոլորտում գոյություն ունեցող անհավասարության հաղթահարմանը, քանի որ նյութական ու հոգևոր բարիքների զգալի մասը բաշխվում է հօգուտ բազմանդամ, թույլ ապահովված ընտանիքների: Սոցիալիզմը ստանձնում է ոչ միայն մարդու կենսամիջոցների հոգսը, այլև նրա բազմակողմանի զարգացումը: Անհրաժեշտություն է առաջանում կատարել այնպիսի բաշխում, որի միջոցով հասարակության բոլոր անդամները ունենան լայն հնարավորություններ իրենց պահանջմունքների բավարարման համար: Մարդու համակողմանի ու ներդաշնակ զարգացման խնդրի լուծման համար անհրաժեշտ է սոցիալիստական պետության ակտիվ միջամտությունը սպառման ոլորտում: Այս առումով դժվար է գերագնահատել սպառման ֆոնդերի դերը, որոնք ամենևին էլ չխախտելով ըստ աշխատանքի վարձատրման հիմնարար սկզբունքը և տուրք չտալով հավասարարության միտումներին, մարդկանց համար հանրային բարիքներից օգտվելու միանման պայմաններ են ստեղծում՝ անկախ նյութական ապահովվածության աստիճանից: Դրանով իսկ կրճատվում են ընտանիքների կենսամակարդակների միջև եղած տարբերությունները:

---

# ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՊՈՏԵՆՑԻԱԼ. ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

**Վ. ՎԻՐԱԲՅԱՆ**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ երկրի տնտեսական զարգացման տեմպերի արագացման կարևոր պայմաններից մեկը համարեց կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը: Ներդրված յուրաքանչյուր ռուբլին պետք է ավելի շատ հատույց տա ազգային եկամտի՝ կապիտալ ներդրումների հիմնական չափանիշի աճի համար: Համագումարը 70-ական թվականների և 80-ական թվականների սկզբի սոցիալ-տնտեսական զարգացման արդյունքները բնութագրեց հետևյալ կերպ. «Էկոնոմիկան իներցիայով շարունակում էր զարգանալ զգալի չափով էքստենսիվ հիման վրա, կողմնորոշվում էր դեպի արտադրության մեջ աշխատանքային և նյութական լրացուցիչ ռեսուրսների ներգրավումը... Նոր շինարարության հաշվին գործը շտկելու փորձերը սրեցին հաշվեկշռվածության պրոբլեմը: Հսկայական ռեսուրսներ ունեցող ժողովրդական տնտեսությունը բախվեց դրանց պակասի հետ» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 32):

Կուսակցությունը միջոցներ ձեռնարկեց նման երևույթները վերացնելու համար տնտեսական մեխանիզմի համակարգի վերակառուցման ուղղությամբ, որովհետև հին համակարգը հնարավորություն չէր ընձեռում էկոնոմիկայի կառավարման գործող համակարգը ... ձեռնարկությունների, այնպես էլ շինովին գնահատելու ինչպես արդյունաբերական ձեռնարկությունների, այնպես էլ շինարարական կազմակերպությունների աշխատանքը, չէր խթանում հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործումը և կապիտալ ներդրումների իրացումը:

ՀԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումում սուր քննադատության ենթարկվեց հանրապետությունում կապիտալ շինարարության կազմակերպումը: Իններորդ և տասներորդ հնգամյակներում չեն յուրացվել մոտ 440 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ: Արդյունաբերական ու գյուղատնտեսական կարողությունների, բնակարանների, կենցաղային, կոմունալ և սոցիալական նշանակության այլ օբյեկտների շահագործման հանձնելու ամենամյա պլանները կատարվում են 75—80 տոկոսով: Չի կրճատվում անավարտ շինարարության ծավալը, չափազանց դանդաղ է աճում աշխատանքի արտադրողականությունը, թույլ են ներդրվում գիտատեխնիկական առաջադիմության նվաճումները:

Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների (առանց կոլտնտեսությունների) կապիտալ ներդրումները 1921—1987 թվականներին կազմել են ավելի քան 30 միլիարդ ռուբլի: Դրա մեծ մասը բաժին է ընկնում ընդլայնված վերարտադրության մեջ կապիտալ ներդրումներին, որը և ազգային եկամտի հիմնական աղբյուրն է: Նոր տեխնիկայով և արտադրության առաջավոր տեխնոլոգիայով զինված արդիական, առավել կատարյալ ձեռնարկությունների կառուցումը, գործող ձեռնարկությունների ընդլայնումը, վերակառուցումը և տեխնիկական վերազինումը ընդհանուր առմամբ հնարավորություն տվեցին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ հասնելու զգալի առաջադիմության: Դրա շնորհիվ հաջողվեց իջեցնել թողարկվող արտադրանքի միավորի համար կեն-

---

*ՎԻՐԱԲՅԱՆ ՎԻԿՏՈՐ ԽԱՉԱՏՈՒՐԻ — ՍՍՀՄ պետպլանին առընթեր պլանավորման և նորմատիվների ԳՀԻ հայկական մասնաճյուղի ավագ գիտաշխատող:*

դանի և նյութականացված աշխատանքի միագումար հասարակական ծախսերը: Սա-
կայն հասարակական աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը հնգամ-
յակից հնգամյակ անկում են ապրել: Այսպես, իններորդ հնգամյակի տարիներին այդ
տեմպերը կազմեցին 5,7, տասներորդինը՝ 4,2, տասնմեկերորդինը՝ 3,7 և 1986—1987
թվականներին՝ 2,0—2,5 տոկոս:

Կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացումը կարելի է դիտել
երկու տեսանկյունից. կապիտալ շինարարության արժեքի իջեցման ու ինվեստիցիոն
ցիկլի կրճատման և արտադրական կարողությունների օգտագործման տնտեսական
արդյունավետության բարձրացման նկատառումով:

Շինարարությունը ժողովրդական տնտեսության փոնդաստեղծ կարևորագույն
ճյուղերից է: Վերջինիս արտադրական պոտենցիալը և դրա օգտագործման աստի-
ճանն զգալիորեն կանխորոշում են կապիտալ շինարարության, ինչպես և ժողովր-
դական տնտեսության մեջ վերարտադրության ամբողջ պրոցեսի արգասավորությու-
նը: Հենց այդ նկատառումով էլ շինարարությունում արտադրական կարողությունների
և հիմնական փոնդերի զարգացմանը մեծ ծավալաչափի կապիտալ ներդրումներ են
հատկացվում:

Հայկական ՍՍՀ-ում ըստ համախառն հասարակական արդյունքի շինարարու-
թյունը երրորդ տեղն է բռնում (արդյունաբերությունից և գյուղատնտեսությունից հե-
տո): Տարեցտարի հանրապետությունում ավելանում են շինարարական կազմակեր-
պությունները, որոնց թիվն արդեն հասել է 360-ի, ըստ որում դրանցից 167-ը մաս-
նագիտացված են: Այդ կազմակերպությունները 1987 թվականին կատարեցին մոտ
1 միլիարդ ռուբլու շինարարական-մոնտաժային աշխատանքներ՝ 1980 թվականի հա-
մեմատությամբ ապահովելով 25 տոկոս աճ:

Կատարված շինարարական-մոնտաժային աշխատանքների վերլուծությունը ցույց
է տալիս սկզբնական կապալային կազմակերպությունների, մասնավորապես նաև
ոչ շինարարական մինիստրությունների ու գերատեսչությունների թվի աճի միտումը:

Ինչպես վկայում է ուսումնասիրությունը, կազմակերպությունների զգալի մասը
թերբեռնված է, ունի սակավազոր արտադրական բազա և աշխատանքի ցածր մե-
քենայացվածություն: Այստեղ աչքի են զարնում որակյալ կադրերի պակասը, շինա-
րարական-մոնտաժային աշխատանքների ինքնարժեքի բարձր նորմատիվները, շի-
նարարության ժամկետների խախտումները, կադրերի հոսունության շեշտակի ուժեղա-
ցումը:

Ըստ սեփական ուժերով կատարված աշխատանքների ծավալի, սկզբնական
կապալային շինարարական ու մոնտաժային կազմակերպությունները տասներկու-
երորդ հնգամյակի առաջին տարում այսպես են դասակարգվում. մինչև 1,2 միլիոն
ռուբլու ծավալով աշխատանք կատարող կազմակերպությունները կազմում են ընդհա-
նուր թվի 12,9 տոկոսը, 1,2-ից մինչև 3,8 միլիոն ռուբլու աշխատանք կատարողները՝
59,2 տոկոսը, 3,8-ից մինչև 6 միլիոն ռուբլու աշխատանքի ծավալ ունեցողները՝ 21,8
տոկոս: Շինարարական և մոնտաժային տրեստներն ըստ 1986 թվականին սեփական
ուժերով կատարած աշխատանքների ծավալի, դասակարգվում են այսպես. այն
տրեստները, որոնք 6-ից մինչև 18 միլիոն ռուբլու աշխատանքների ծավալ ունեն,
կազմում են ընդհանուր թվի 56,9 տոկոսը, 18-ից մինչև 30 միլիոն ռուբլու ծավալ
ունեցողները՝ 29,4 տոկոսը, 30-ից մինչև 50 միլիոն ռուբլու ծավալ ունեցող-
ները՝ 11,8 տոկոս, իսկ 50 միլիոն ռուբլու և ավելին ունեցողները՝ 1,9 տոկոս:
1987 թվականին սկզբնական շինարարական և մոնտաժային կազմակերպությունների
և տրեստների խմբավորումում էական փոփոխություններ չեն կատարվել: Պրակտի-
կան ցույց է տալիս, որ մինչև 3 միլիոն ռուբլու շինարարական-մոնտաժային աշխա-
տանքների ծրագիր ունեցող կապալային կազմակերպությունները զրկված են շինա-
րարական արտադրության ինդուստրացման և առկա ռեսուրսների արդյունավետ օգ-
տագործման պայմաններից: Այդ կազմակերպությունները, որպես կանոն, չեն կատա-
րում աշխատանքների պլանային ծրագիրը և կուտակումների պլանը: Տարեկան մինչև
18 միլիոն ռուբլու աշխատանքային ծավալով տրեստների ճնշող մեծամասնությունը,
որոնք հանրապետությունում կազմում են կեսից ավելին, ցածր շահութաբերություն
ունի:

Շինարարական կազմակերպությունների աշխատանքի արդյունավետության վրա
չափազանց վատ է անդրադառնում շինարարական կազմակերպությունների արտա-
դրական կարողությունների և կապալային աշխատանքների պլանի անհաշվեկշռվա-



ծությունը: Տասնմեկերորդ հնգամյակում շինարարական կազմակերպությունների բեռ-
նըվածությունը ծրագրվում էր անհամաչափորեն, նկատելի է կազմակերպությունների
մի մասում ձեռք բերված մակարդակի համեմատությամբ աշխատանքների պլանա-
վորվող ծավալի ցածրացում, իսկ մի շարք կազմակերպություններում՝ բարձրացում:
Սիստեմատիկաբար թույլ էին տրվում տարեկան պլանային առաջադրանքների էա-
կան շեղումներ հնգամյա պլաններում նախատեսվածներից: Համանման վրիպումներ
և թերացումներ առկա են նաև տասներկուերորդ հնգամյակի պլաններում:

Աչքի է զարնում շինարարության հիմնական փոնդերի արժեքի աճը, որը 1987
թվականին, 1980 թվականի համեմատությամբ, կազմեց 57,5 տոկոս (արդյունաբե-
րության մեջ նույն ժամանակաշրջանում՝ 46 տոկոս), մինչդեռ աշխատանքի արտա-
դրողականությունը բարձրացավ 24 տոկոսով: Նշված տվյալների համադրումը ցույց
է տալիս էական այնպիսի ռեզերվի առկայությունը, որը կարող է ապահովել աշխա-
տանքի արտադրողականության աճի տեմպերի զգալի բարձրացումը:

Շինարարության նյութատեխնիկական բազայի զարգացմանը հատկացված կա-
պիտալ ներդրումների զգալի մասը տրամադրվել է շինարարական մեքենաների ու
մեխանիզմների համակազմի զարգացմանը, մեքենայազինվածության ուժեղացմանը:
Այսպես, 1980—1988 թվականներին բեռնիչների քանակն ավելացել է 2,1, էքսկավա-
տորներինը՝ 1,35, ավտոմոբիլային ամբարձիչներինը՝ 1,25 անգամ:

Ինչպես ցույց է տալիս մեքենայական համակազմի վերլուծությունն ըստ տեխ-
նիկական և շահագործական բնութագրումների, տիպերի ու տիպաչափերի, մատա-
կարարվող մեքենաները և մեխանիզմները մի շարք դեպքերում չեն համապատաս-
խանում ժամանակակից շինարարական արտադրության պահանջներին: Նրա կազ-
մում գերակշռում են այնպիսի մեքենաները, որոնց գործադրումը մեծածավալ աշ-
խատանքների դեպքում սակավ արդյունավետ է, դրանց մի մասի հուսալիությունը՝
անբավարար, իսկ շահագործման և նորոգման աշխատատարությունը՝ մեծ:

Շինարարական արտադրության արդյունավետության բարձրացման կարևորա-
գույն գործոնը համալիրային մեքենայացումն է, որի շնորհիվ կարելի է աշխատանքի
արտադրողականությունն ավելացնել 20—30 տոկոսով: Վերլուծությունը ցույց է տա-
լիս շինարարությունում 1980—1987 թվականներին ձեռքի աշխատանքների մեքենա-
յացման տեմպի թուլացումը: Մեքենաներով և մեխանիզմներով արտադրական-տեխ-
նոլոգիական գործողություններ կատարող բանվորների տեսակարար կշիռը մեծա-
ցել է ընդամենը 5 կետով և կազմել բանվորների ընդհանուր թվի 33 տոկոսը:

Առանձնակի ուշադրության է արժանի շինարարների ապահովումը փոքր մեքե-
նայացման միջոցներով, որոնց կիրառումը համապատասխան գործողության վրա
կատարվող ծախսումները կրճատում է մի քանի անգամ և աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացման խոշոր ռեզերվ է: Այդպիսի միջոցներով հանրապետու-
թյան շինարարական կազմակերպությունների անբավարար զինվածությունը հար-
դարման, տանիքավորման, բետոնապատման և այլ գործողությունների ընթացքում
ձեռքի աշխատանքի մեծ ծախսումների պատճառներից մեկն է: Մեկ միլիոն ռուբլի
շինարարական-մոնտաժային աշխատանքներում գործիքի 40—50 միավորի պահանջ-
մունք է զգացվում, մինչդեռ առաջատար շինարարական կազմակերպություններում
կա ընդամենը 18—25 միավոր:

Կապիտալ շինարարության ծավալների աճի ուղին աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացումն ու գիտության և տեխնիկայի նվաճումների օգտագործումն
է: Շինարարությունում աշխատանքի արտադրողականության աճը հիմնականում ձեռք
է բերվում շինարարական արտադրանքի աշխատատարության նվազեցման և ին-
վեստիցիոն ծրագրերի իրականացման օրացուցային ժամկետների կրճատման շնոր-
հիվ: Այս խնդիրների կատարման գրավականն է շինարարական կազմակերպու-
թյունների արտադրական հզորությունը: Այն որոշվում է արտադրական փոնդերի մի-
ջին տարեկան արժեքի և այդ արժեքի մեկ ռուբլու հաշվով փոնդահատույցի նորմա-
տիվային ցուցանիշի հարաբերակցությամբ: Ուստի շինարարությունում կարևորագույն
ցուցանիշներից մեկը փոնդահատույցն է: Սակայն հանրապետության շինարարու-
թյունում, չնայած փոնդազինվածության զգալի ուժեղացմանը, փոնդահատույցը պա-
կասում է: Այսպես, 1980 թվականին շինարարական նշանակության պետական հիմ-
նական փոնդերի հատույցը կազմել էր 2,57 ռուբլի, 1986 և 1987 թթ.՝ համապատաս-
խանաբար՝ 2,3, 2,5 ռուբլի: Այս տվյալները գիտության ու տեխնիկայի նվաճումների
օգտագործման ցածր մակարդակի, ինչպես նաև այն բանի վկայությունն են, որ

ցածր արտադրողական աշխատանքն առաջվա պես շատ է տարածված, և որ շինարարության կազմակերպումն ընդհանուր առմամբ անբավարար է:

Հիմնական արտադրական ֆոնդերի ակտիվ մասը (աշխատուժ, ուժային մեքենաներ, տրանսպորտային միջոցներ), որոնց տեսակարար կշիռը հանրապետության շինարարական կազմակերպությունների ընդհանուր համակազմում անցնում է 70 տոկոսից, առանձնակի դեր է խաղում ֆոնդահատույցի մեծացման գործում: Այդ առնչությամբ անհրաժեշտ է ավելացնել մեքենաների ու մեխանիզմների հերթափոխայնությունը, որը 1,2-ից չի անցնում, վերացնել ներհերթափոխային պարապուրդները, բարելավել մեքենաների ու մեխանիզմների նորոգման և սպասարկման կազմակերպումը:

Շինարարական արտադրությունը ժողովրդական տնտեսության առավել նյութատար ճյուղերից է և աշխատանքների ընդհանուր արժեքով նյութական ծախսումները բոլոր ծախսերի կեսից ավելին են կազմում: Ահա թե ինչու կապիտալ շինարարության արդյունավետության բարձրացման արմատական խնդիրներից է զարգացած նյութատեխնիկական բազայի ստեղծումը, այն ամենի խնամքով օգտագործումը, ինչ կա մեր տրամադրության տակ:

ՀԿԿ Կենտկոմի 1988 թվականի սեպտեմբերյան պլենումը նշեց, որ երկար տարիներ պատշաճ ուշադրություն չէր հատկացվում կապիտալ շինարարության նյութատեխնիկական բազայի զարգացմանը, շինարարական արտադրության և նախագծային գործի կազմակերպման մակարդակի բարձրացմանը... Առանձնակի ուշադրություն են պահանջում շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների, շինանյութերի արդյունաբերության վերակառուցումը և տեխնիկական վերազինումը: Այստեղ սարքավորումների մոտ 70 տոկոսը ֆիզիկապես և բարոյապես հնացած է, իսկ տեխնոլոգիան 50-ական թվականների մակարդակի վրա է գտնվում:

Շինարարական-մոնտաժային աշխատանքների կառուցվածքի վերլուծությունը ցույց է տալիս գործադրվող հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների ծավալի մեծացման միտումը, ինչպես նաև այն, որ ռեսուրսների առանձին տեսակների արտադրության ծավալների հարաբերակցության միջև այսպես կոչված անվանակարգային տեղաշարժ է կատարվում, որով պայմանավորվում է շինարարության արտադրական բազայի տեխնիկատնտեսական ցուցանիշների մակարդակը: Հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների և դետալների արտադրությունը տասնմեկերորդ հնգամյակի տարիներին ավելացել է 15 տոկոսով:

Հավաքովիության ընդլայնումը շինարարության արդյունավետության բարձրացման, ինվեստիցիոն ցիկլի կրճատման կարևոր պայմանն է: Ահա թե ինչու ընդհանուր առմամբ շինարարության արժեքի իջեցման համար մեծ նշանակություն ունի հենց երկաթբետոնե կոնստրուկցիաների ու դետալների արտադրության էժանացումը, որն առաջին հերթին կախված է հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաներ թողարկող ձեռնարկությունների կարողության և մասնագիտացման ճիշտ ընտրությունից: Սակայն հանրապետությունում առաջվա պես կառուցվում են հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիաների սակավազոր ունիվերսալ գործարաններ և պոլիգոններ:

Այսպես, երկաթբետոնե կոնստրուկցիաներ են արտադրում մոտ 50 ձեռնարկություններ, որոնք ունեն ինքնուրույն հաշվեկշիռ: Դրանցից միայն վեցն ունի ավելի քան 100 հազար խորանարդ մետր հզորություն, իսկ միջին հաշվով յուրաքանչյուր ձեռնարկությանը տարեկան 36 հազար խորանարդ մետր է ընկնում: Փաստորեն արտադրանքի հիմնական ծավալն ապահովում են տարեկան 50 հազար խորանարդ մետր հզորություն ունեցող ձեռնարկություններ, որոնք տալիս են ամբողջ արտադրանքի մոտ երեք քառորդը:

Հանրապետությունում երկաթբետոնի արտադրության թույլ կենտրոնացումն աչքի է զարնում երկրի և ՌՍՖՍՀ-ի ցուցանիշների հետ համեմատելիս: Երկրում և ՌՍՖՍՀ-ում երկաթբետոնի արդյունաբերությունն ընդհանուր առմամբ ունի կենտրոնացման բավական բարձր մակարդակ: Այստեղ ձեռնարկությունների միջին հզորությունը 60 հազար խորանարդ մետր է:

Միաժամանակ մեր հանրապետության ձեռնարկություններում ապրանքային արտադրանքի ինքնարժեքը և ֆոնդատարությունը նույնպես բարձր են 5—10 տոկոսով: Դրանք էականորեն տարբերվում են նաև շահութաբերության մակարդակով:

Հավաքովի երկաթբետոնի արտադրության տարանջատվածությունը և միասնական տեխնիկական քաղաքականության բացակայությունն էապես ազդում են նաև նյու-



թական ռեսուրսների ռացիոնալ, խնայողական օգտագործման վրա: Այսպես, հավաքովի երկաթբետոնի արտադրության համար օգտագործվում է հանրապետությունում թողարկվող ցեմենտի ավելի քան 40 տոկոսը: Դրանով իսկ խախտվում են գործող նորմատիվների պահանջները, և չափից ավելի ցեմենտ է ծախսվում: Ինչպես հայտնի է, հավաքովի երկաթբետոնի արտադրության մեջ ռեսուրսախնայողության ուղղությամբ կատարվող աշխատանքը բազմապլան է. արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործում, ավելի առաջադիմական և ավելի քիչ նյութատար կոնստրուկցիաների ներդնում, նյութական ռեսուրսների ծախսման նորմավորման կատարելագործում, նյութերի ընդունման և պահպանության կարգավորում: Այս ամենը պետք է ենթարկվի միասնական տեխնիկական քաղաքականության:

Հանրապետությունում շինարարության արտադրական պոտենցիալի կառուցվածքում գլխավոր տեղ է զբաղեցնում շինարարական նյութերի արդյունաբերությունը, որոնց արտադրության ծավալն զգալիորեն մեծանում է ընթացիկ հնգամյակում: Շինարարության նյութատեխնիկական բազայի հետագա զարգացման և շինարարական արտադրության ծախսերի պակասեցման համար կարևոր նշանակություն ունի ցեմենտի թողարկման ավելացումը և, որ ամենագլխավորն է, նրա որակի բարձրացումը: Բավական է նշել, որ մեկ մակնիշով բարձր որակավորված ցեմենտի թողարկումը հավասարժեք է 10 տոկոսով նրա արտադրության ավելացմանը: Հանրապետությունում միջին մակնիշությունը հասնում է սոսկ 414-ի, այն դեպքում, երբ միջին միութենական ցուցանիշը զգալիորեն ավելի բարձր է:

Չնայած հանրապետությունում և Միության մասշտաբով կատարված զգալի աշխատանքին, ցեմենտի արտադրության մակարդակը, նրա տեխնիկատնտեսական ցուցանիշները և արտադրության տեխնոլոգիան ընդհանուր առմամբ զիջում են այդ բնագավառի արդի պահանջներին: Արտասահմանում ցեմենտի արտադրության զարգացման հիմնական ուղղությունը տեխնոլոգիական պրոցեսների և ամբողջ գործարանների առավելագույն ավտոմատացումն է: ԱՄՆ-ում, Ճապոնիայում, ԳՖՀ-ում լայն կիրառություն են գտել կառավարող ծրագրավորային մեքենաները հատկապես հումքային խառնուրդի պատրաստման արտադրությունում: Ամերիկյան «Ֆորկվիլտ» ֆիրմայում առաջին անգամ ցեմենտի արտադրության մեջ կիրառվել է միկրոպրոցեսորներով սարքավորված կառավարվող էլեկտրոնային համակարգ: Այն իրականացնում է խառնուրդի բաղադրության օպտիմալացումը, պտտվող վառարանների, հումքի և ցեմենտի աղացների աշխատանքի կառավարումը, պատրաստի հումքի և ցեմենտի փոխադրումն ու պահպանումը:

Կապիտալ շինարարության հետագա զարգացումն աներևակայելի է առանց ոչ հանքային իներտ լցանյութերի (խիճ, գետակոպիճ, ավազ) արտադրության ավելացման և դրանց պատրաստման համար կատարվող ծախսերի նվազեցման: Շինարարությունում գործադրվող նյութական բոլոր ռեսուրսների առավել մեծ ծախսը բաժին է ընկնում ոչ հանքային իներտ լցանյութերին: Այդ ծախսերը կազմում են շինարարությունում օգտագործվող նյութերի ընդհանուր արժեքի մոտ 20 տոկոսը և գերազանցում մետաղի, ցեմենտի, փայտանյութի ծախսումներին: Հավաքովի երկաթբետոնե արտադրությունում իներտ լցանյութերի հետ կապված ծախսերի տեսակարար կշիռն ընդհանուր ինքնարժեքի ավելի քան 20 տոկոսն է կազմում:

Ընթացիկ հնգամյակի սկզբում ակնհայտ դարձավ, որ հանրապետությունում շինարարության կառավարման կազմակերպումն արմատական փոփոխությունների կարիք ունի: Ծարունակաբար չէին կատարվում պլանային առաջադրանքները, մեծանում էին անավարտ շինարարության ծավալները, շինանյութերի արդյունաբերության նախկին միհիստրության ձեռնարկություններում դանդաղ էին նորացվում ֆոնդերը, ընկնում էր արտադրության որակը, կրճատվում էին արտադրության ծավալները, շինարարական ինդուստրիայի ձեռնարկություններն ավելի ու ավելի էին հետ մնում շինարարներից: Պարզորոշ բացահայտվեց բացասական գործոնը՝ գերատեսչությունների տարանջատվածությունը. յուրաքանչյուր կազմակերպություն աշխատում էր իր լոկալ նպատակների համար:

Կապիտալ շինարարության զարգացման գործում որոշակի արգելակ էր դարձել նաև պլանավորման համակարգը, որը խոչընդոտում էր շինարարների արդյունավետ, ռիթմիկ աշխատանքը: Պատվիրատուների առջև ծառանում էին դժվար հաղթահարելի արգելափակոցներ: Շինարարական կազմակերպությունների կյանքն ամեն տարի

ասես նորից էր վերսկսվում: Հերթական պլանը, որպես կանոն, չէր համապատասխանում հնգամյակով նախատեսվածին, իսկ փաստականի ճշգրտումը շարունակվում էր տարեսկզբից հետո դեռ երկար ժամանակ: Պլանային համակարգի ձևախախտման պատճառով տեսադաշտից դուրս է ընկնում, որքան էլ տարօրինակ է, շինարարության կոնկրետ նպատակը՝ օբյեկտի կառուցումը:

Ժողովրդատնտեսական կարևոր պրոբլեմ է դարձել նախագծումը, շինարարությունը և գործարկված օբյեկտների կարողությունների յուրացումը ներառող ինվեստիցիոն պրոցեսի արդյունավետ կառավարումը: Կապիտալ շինարարության պլանավորման համակարգի մեծածավալության պատճառով շատ օբյեկտներ հաճախ սկսում էին կառուցվել նախագծային աշխատանքների ավարտից 4—6 տարի անց: Հետևաբար, նոր կառուցված օբյեկտներն արդեն վերակառուցում ու արդիականացում էին պահանջում, այդպես էլ չապահովելով կապիտալ ներդրումների փոխհատուցումը:

Այս բոլոր պրոբլեմները լուծման էին սպասում: Միաժամանակ ձեռնարկված տնտեսական ռեֆորմը պահանջում էր կառավարման համակարգը փոխարինել շինարարական հարահոսով: Այդ նկատառումով ընթացիկ տարվա կեսին որոշում ընդունվեց շինարարության մինիստրությունը, շինանյութերի մինիստրությունը և Պետշինը լուծարքելու և դրանց հիման վրա կառավարման միասնական մարմին՝ Հայկական ՍՍՀ պետական շինարարական կոմիտե ստեղծելու մասին: Պետշինը լուծարքված գերատեսչությունների ոչ միայն տնտեսական կառավարման, այլև, անկախ գերատեսչական ենթակայության, ամբողջ շինարարական պրոցեսի պետական կառավարման մարմին է:

Այսպիսով, հանրապետությունում շինարարական պոտենցիալի օգտագործման և կատարելագործման առանցքային խնդիրը գիտատեխնիկական մակարդակի բարձրացումն է և տնտեսական մեխանիզմի կատարելագործումը, որը միավորում և խթանում է շինարարների, նախագծողների, շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության աշխատողների, ինվեստիցիոն պրոցեսի բոլոր մասնակիցների գործունեությունը:

---



# ԿՐՈՆԻ ԵՎ ԱԶԳԻ ՓՈԽՀԱՐԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ XIX ԴԱՐԻ ԿԵՍԵՐԻ ՀԱՅ ԱԶԱՏԱԽՈՀԱԿԱՆ ՄՏՔՈՒՄ

**Ա. ՍԱՐԳՍՅԱՆ**

ԱԶԳԵՐԻ ՀԱՄԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ բուրժուական դարաշրջանի անխուսափելի արդյունք է: Խոսելով կապիտալիզմի պայմաններում ազգային հարաբերություններում դիտվող հակադիր միտումների մասին, Վ. Ի. Լենինը նշում էր, որ դրանց մեջ կարևորը ազգային կյանքի ակտիվացումն է, ճնշողների դեմ ազգային շարժումների աշխուժացումը, ազգային պետությունների ձևավորումը:

Հայաստանը դուրս չմնաց պատմական առաջընթացի այդ ընդհանուր միտումից: XIX դարի կեսերից սկսած հայ իրականության մեջ կապիտալիստական հարաբերությունների հաստատումը հանգեցրեց հայ ազգի ձևավորմանը, նրա ազգային գիտակցության, հատկապես ինքնագիտակցության զարգացմանը:

Ազգային-ազատագրական պայքարի գաղափարախոսները, հաշվի առնելով Օսմանյան կայսրության ներքին խառնակ վիճակը, տնտեսական ու քաղաքական խոր ճգնաժամը, արտաքին քաղաքական բարեպատեհ հանգամանքները, ազգային ինքնուրույնության հույսն էին փայփայում: Այս պայմաններում հայ առաջադեմ գործիչները, իմաստավորելով հայ ժողովրդի պատմական անցյալը, ներկան և հետագա գոյության խնդիրները, վերագնահատման ենթարկեցին նաև նրա միասնությունը պահպանող, զարգացնող և կամ էլ խոչընդոտող գործոնները: Իմաստավորվեց նաև քրիստոնեական եկեղեցու դերն ու տեղը ազգապահպանության գործում:

Հայ իրականության մեջ եկեղեցու ազգապահպան դերը, եկեղեցի-ազգ փոխհարաբերությունը պատմականորեն ձեռք էր բերել մի շարք առանձնահատկություններ: Բանն այն է, որ պետականացվելուց հետո տարածվելով ժողովրդի մեջ և սերտորեն կապվելով նրա պատմության ու ավանդույթներին՝ քրիստոնեական եկեղեցին Հայաստանում տեղայնացվեց և ազգային եկեղեցու համարում ձեռք բերեց: Դա հնարավոր դարձավ IV դարում իրականացված ռեֆորմի շնորհիվ, որով հայ եկեղեցին անջատվեց և դարձավ ինքնուրույն: Այդ պրոցեսին մեծապես նպաստեցին նաև հայ գրերի ստեղծումն ու 449—451 թթ. ժողովրդաազատագրական շարժումներին եկեղեցու ակտիվ մասնակցությունը: Երբ պատմական ու քաղաքական պայմանների հետևանքով հայ ժողովուրդը կորցրեց իր պետականությունը, եկեղեցին դարձավ նաև ազգային-պետական և քաղաքական ֆունկցիաներ իրականացնող հաստատություն: Հայ ժողովրդի պատմության մեջ ստեղծված յուրահատուկ պայմանների բերումով եկեղեցին զուտ կրոնական ֆունկցիաներից բացի իրականացնում էր նաև ազգի գաղափարական ամբողջության պահպանման և մշակույթի զարգացմանը նպաստող գործոն: Քաղաքականապես ենթարկվելով պարսկական ու թուրքական պետությունների և դաժանորեն շահագործվելով նրանց կողմից, հայերն ավելի սերտորեն կապվեցին եկեղեցու հետ, համախմբվեցին նրա շուրջը, որովհետև ժողովրդի ներքին կյանքին վերաբերող շատ հարցեր միայն եկեղեցու միջոցով էին կարգավորվում, նրան կից գործող դպրոցներում էին հայ երեխաները ազգային գիր և գրականություն սովորում: Եվ վերջապես, հայ եկեղեցիով էին դրսում հայերին ճանաչում, ազգը ընդունում որպես առանձին կրոնական միավոր:

---

*ՍԱՐԳՍՅԱՆ ԱՐԱՄ ՀԱԿՈԲԻ— Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, Երևանի ժողովրդական տնտեսության ինստիտուտի մարքս-լենինյան փիլիսոփայության ամբիոնի դոցենտ:*

կան տարբերությունները ազգային երկպառակությունների տեղիք չեն տալիս, բազմազգության տպավորություն չեն ստեղծում, իսկ ազգի տարբեր երկրներում ցիրուցան եղած անդամներին միավորողը կլինեն ոչ թե կրոնն ու եկեղեցին, այլ գիտությունը, լուսավորությունը, հայրենասիրությունը:

Փորձելով ազգը դուրս բերել պառակտված վիճակից, կրոնական խժդժություններից՝ հայ առաջադեմ մտածողները առաջադրում էին խղճի ազատության կամ սրա մասնավոր դեպքը հանդիսացող դավանանքի ազատության, կրոնական ազատամտության ու հանդուրժողականության պահանջները:

Խղճի ազատությունը նոր բարձրացող բուրժուազիայի քաղաքական նվաճումներից է և իր ժամանակակից իմաստով ձևավորվել է XVIII—XIX դարերի բուրժուական հեղափոխությունների ընթացքում: Պայքարելով ֆեոդալիզմի և նրա գաղափարախոսությունը ներկայացնող եկեղեցու դեմ՝ բուրժուազիան պահանջում էր, որ եկեղեցին չմիջամտի պետության գործերին, ժողովրդին տրվի դավանանքի ազատություն, եկեղեցին դառնա հանդուրժող: Առաջնորդվելով այս պահանջներով՝ բուրժուական աթեիզմի ներկայացուցիչները զգալի գործ կատարեցին կրոնական հանդուրժողականության սկզբունքների մշակման գործում, իսկ բուրժուական և բուրժուադեմոկրատական հեղափոխությունները պրակտիկայում իրականացրին դրանք: Ազդվելով Ջոն Լոկի այն մտքից, որ կրոնական իշխանությունը չպետք է եկեղեցու սահմաններից դուրս գա և քաղաքական հարցերով զբաղվի, ինչպես նաև պետությունը չպետք է բռնանա և պարտադրի մեկ կրոն՝ հալածելով մյուսներին, որովհետև պետությունը և եկեղեցին տարբեր սկզբունքներով են առաջնորդվում, XVIII դարի երկրորդ կեսի Մադրասի հայկական գաղթօջախի ներկայացուցիչները արդեն նշում էին, որ աշխարհիկ և հոգևոր իշխանությունները միմյանց գործերին խառնվելու իրավունք չունեն:

Թեև խղճի ազատության բուրժուական ըմբռնումը սահմանափակ և միակողմանի է, որովհետև այն, Մարքսի արտահայտությամբ, «ոչ այլ ինչ է, քան **խղճի** հնարավոր ամեն տեսակի **կրոնական ազատության** հանդուրժում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երեք հատորով, հ. 3, էջ 29), այնուամենայնիվ իր ժամանակի համար այն առաջադիմական երևույթ էր:

Հայ իրականության մեջ խղճի կամ դավանանքի ազատության պահանջը ավելի շատ ազգային-քաղաքական նպատակներ էր հետապնդում, որովհետև ազգային կյանքում եկեղեցու տիրապետության պայմաններում, երբ իշխում էր կրոն-ազգ հանիրավի նույնացումը, դավանափոխությունը շարունակում էր ազգային պառակտումների պատճառ դառնալ:

Ազգային քաղաքական գիտակցության բարձրացման պայմաններում, երբ հայ առաջադեմ մտածողները Թուրքիայի և եվրոպական պետությունների քաղաքական կյանքում դիտված փոփոխությունները փորձում էին օգտագործել հօգուտ հայ ժողովրդի, ազգի անկախության հույսն էին փայփայում, դավանափոխությունը և դրա հետևանքով առաջացած հուզումները հայ հասարակության ուշադրությունը շեղում էին ազգային խնդիրներից:

Պատմական այսպիսի հանգամանքներում էր, որ XIX դարի կեսերի հայ առաջադեմ գործիչները առաջ քաշեցին խղճի ազատության սկզբունքը: Ստ. Ոսկանը գրում է, որ ազգային երկպառակություններին վերջ տալու համար պետք է առաջնորդվել կրոնական հանդուրժողականության սկզբունքներով: Եթե արևմտյան ժողովուրդները, նրա կարծիքով, վերջ չտային կրոնական կռիվներին և դարերով արյուն թափելուց հետո չհամոզվեին, որ դրանից ո՛չ բարոյական, ո՛չ նյութական բարօրություն կարող է առաջանալ, ապա ոչ մի տարբերություն Եվրոպայի և Ասիայի միջև չէր լինի և եթե «Աստված չ՛նե, վաղեմի փորձը մոռանալով սկսեն նորեն կրոնական արյունարբու կռիվը, արհեստ, գիտութիւն, լույս և պայծառութիւն կը մնա՞ր անոնց մեջ, և հին բարբարոսութիւնը չտարածե՞ր իր ստվերքը միտքերու և սիրտերու վրա» («Արևմուտք», 1859, թիվ 2, էջ 121): Նա դառնացած նշում է, որ կրոնական հալածանքները իրեն միշտ սոսկում են պատճառել, մինչդեռ կրոնը համոզմունքի հարց է, չի կարելի կրոնը ազգության, գիտության, լուսավորության կամ նյութական շահերի հետ շփոթել: Անդրադառնալով հայ կաթոլիկների այն հայտարարությանը, թե նրանք եղբայր են համարում միայն կաթոլիկությունն ընդունած հայերին, Ոսկանը գրում է. «... ուրեմն մենք, որ հռոմեական ըլլալու հարգը կամ անարգութիւնը չ՛ունինք, միազգի չ՛ե՞նք, ազգութիւն չը՞ կա մեր մեջը, կրոն կա՞, այսպիսի մահածին բաժանում մը մենք միտքով անգամ չ՛ենք ըներ և հավիտենական ընելու չ՛ենք, ազգը կրոնե վեր



կը դնենք... կրոնը կը պաշտենք, այլ ազգութիւնս անոր չ՛ենք զոհեր» («Արևմուտք», 1855, թիվ 4, էջ 105):

Ընդվզելով կրոնական անհանդուրժողականության դեմ՝ Նազարյանցը գրում է. «Ինչ իշխանութիւն ունի մի քրիստոնեա մի քրիստոնեի խղճի ազատութեան վերա. մարդս, այո, իբրև քաղաքացի, պարտական է հնազանդել այս և այն աշխարհական օրենքին այս և այն թագավորութեան մեջ, ուր ունի նա յուր օթևանը, բայց կրոնական բաների մեջ նա գործ ունի յուր խղճի և յուր Աստծո հետ...» («Հյուսիսափայլ», 1860, թիվ 10, էջ 309).

Այսպիսով, XIX դարի կեսերի հայ ազատախոհական մտքի ներկայացուցիչները, պայքարելով ազգային պատկանելությունը կրոնով որոշելու տեսակետի դեմ, այն ճիշտ միտքն էին առաջ քաշում, որ այդ մտայնությունը ազգի պահպանության գործում բացասական դեր է կատարում ինչպես ուրիշ ազգերի, այնպես էլ հայ ժողովրդի կյանքում:

Անցել է մեկ դարից էլ ավելի ժամանակաշրջան, բայց հայ եկեղեցու գաղափարախոսության մեջ կրոնի և ազգի փոխհարաբերության մեկնաբանության հարցում քիչ բան է փոխվել, եթե չասենք, որ գրեթե ոչինչ չի փոխվել: Այսօր էլ եկեղեցու գործիչները շարունակում են քրիստոնեությամբ հիմնավորել և իմաստավորել հայ ժողովրդի պատմական անցյալն ու ներկան, եկեղեցով պայմանավորել հայ ժողովրդի գոյությունը և այլն: Այսպես օրինակ, հայ եկեղեցու ջատագով Տ. Փոլադյանի կարծիքով «Դոգմաները ու եկեղեցական արարողությունները խորհրդանիշ են ազգի ապահովության ու միասնության ուժի: Դրանք օգնել են ազգի համերաշխությանն ու եկեղեցուն՝ կապելով ներկա սերունդներին իրենց անցյալի հետ» և որ «հայ եկեղեցին եղել է այն հիմքը, որի վրա հայ ժողովրդի ազգային, հոգևոր, մտավոր, մշակութային և հասարակական ուժերը կառուցվել են ու պահպանվել» (T. Poladian. The edicational role of armenian church. n—Y. 1944, p. 61):

Կրոնի ու ազգի, էթնիկական ու դավանական հատկանիշների նույնացման երևույթներ դիտվում են նաև մյուս եկեղեցիների գաղափարախոսության մեջ: Էթնիկական ու դավանական հատկանիշների փոխհարաբերության հարցերը աշխույժ քննարկման առարկա են դարձել մարքսիստական կրոնագիտության և ազգագրության մեջ: Այդ հարցերին վերաբերող գրականության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ առ այսօր միանշանակ պատասխան գոյություն չունի: Կարծիքները հակասական են, հաճախ էլ իրարամերժ:

Հետազոտողների մի մասի կարծիքով կրոնական և էթնիկական հատկանիշները չպետք է միմյանց հետ նույնացնել, որովհետև դրանք սոցիալական կյանքի տարբեր կողմերին են վերաբերում: Կրոնը էթնոսի ոչ թե հատկանիշ է, հատկություն, այլ ազգագոյացման մոդուս (տե՛ս Пичков П. О. соотношение конфессиональной и этнической общности. «Советская этнография», 1973, № 6, стр. 52—53, 63): Նման տեսակետ է զարգացնում նաև ակադեմիկոս Յու. Բրոմլեյը էթնոսի ձևավորմանը նվիրված իր աշխատություններում:

Հեղինակների մեկ ուրիշ խումբ ազգագոյացման պրոցեսում կրոնին ավելի մեծ տեղ է հատկացնում: Այսպես օրինակ, Ս. Տոկարևի կարծիքով «... կրոնը, ազգագրագետիս համար, էթնիկական հատկանիշներից մեկն է: Ամենասկզբից մինչև ամենավերջը կրոնը սոցիալական կապի ձև է, որը փոխադարձորեն կապում է նույնադավաններին և փոխադարձորեն վանում այլադավաններին: Այս իմաստով նա իրականացնում է այն (ավելի ստույգ՝ համանման) դերը, ինչ ցանկացած ուրիշ էթնիկական հատկանիշ՝ լեզուն, մշակույթի ձևերը, ժողովրդական ստեղծագործությունը և այլն» (Токарев С. Еще раз о религии как социальном явлении (ответ моим критикам). «Советская этнография», 1981, № 1, стр. 51—52):

Ինչպես հայտնի է, մարքսիստական գրականության մեջ ընդունված է այն տեսակետը, որ ժամանակակից ազգերը առաջացել են կապիտալիստական հարաբերությունների ձևավորման հետ միասին, իսկ ազգ կազմող հատկանիշների մեջ առանձնացվում են տարածքը, ընդհանուր տնտեսական կապերը, միասնական լեզուն, մշակույթի և հոգեբանության էթնիկական առանձնահատկությունները: Լեզուն, մշակույթը և հոգեբանությունը ձևավորում են ազգային ինքնագիտակցությունը, որն ազգի զարգացման, նրա հասունացման կարևորագույն արտահայտությունն է, որովհետև ինքնագիտակցության միջոցով են ձևավորվում ազգային արժանապատվության, հպարտության զգացումները, ազգային պատկանելության ըմբռնումը: Թվարկած հատկանիշները, իհարկե, դիտվել են նաև մինչև կապիտալիստական հարաբերությունների

ձևավորումը, բայց դրանք իրենց լիակատար և ամբողջական տեսքը ստացել են կապիտալիզմի օրոք, իսկ մինչ այդ ժողովուրդների կամ ինչպես գրականության մեջ է օգտագործվում, ազգույթների ձևավորման պրոցեսում որպես մշակույթի տարր նշանակալից է եղել կրոնի կատարած դերը: Մարքսիզմի ականավոր տեսաբան Ստ. Շահումյանի կարծիքով, ընդհանուր կյանքի տասնյակ և հարյուրավոր դարերի ընթացքում, մարդկանց մեջ ստեղծվում է նաև ընդհանուր մտածողության եղանակ, աշխարհայացք, կրոնական հասկացություններ, ավանդույթները, սովորույթներ, որոնք տնտեսական զարգացման հետ ձեռք-ձեռքի տված ընթացել են անարգել ձևով, մինչև որ ստեղծվել են ժամանակակից ազգերը (տե՛ս Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 1, էջ 241): Նրա կարծիքով մինչև ժամանակակից ազգերի ձևավորումը ժողովուրդների կյանքում հսկայական դեր է կատարել կրոնը:

Առաջանալով նախնադարում, կրոնական հավատալիքները մեծ դեր են կատարել տոհմերի, ցեղերի, ընտանիքների կյանքում: Ավելին, դրանք ունեցել են տոհմացեղային բնույթ, այսինքն՝ դուրս չեն եկել տվյալ տոհմի ու ցեղի սահմաններից: Նախնադարում կրոնը ներառել է հասարակական պատկերացումների գրեթե բոլոր ձևերը և հանդիսացել հասարակական գաղափարախոսության համընդհանուր ձև, մի միասնական աշխարհայացք, որը մեծ դեր է կատարել էթնիկական գիտակցության ձևավորման գործում և այնքան էլ չի տարբերվել կրոնականից:

Նույն երևույթը դիտվել է նաև ստրկատիրական հասարակությունում, որտեղ տոհմացեղային հավատալիքները փոխարինվել են ազգային-պետական կրոններով: Այդ շրջանում էլ փաստորեն էթնիկական և դավանական հատկանիշները հիմնականում հանդես են եկել միասնաբար, իսկ կուլտուրան ունեցել է էթնիկադավանական բնույթ:

Ֆեոդալիզմի պայմաններում կրոնի և էթնոսի փոխհարաբերության հարցում գրեթե ոչինչ չի փոխվել, եթե չասենք, որ կրոնական մոտիվն ավելի է ուժեղացել: Ինչպես Էնգելսն է նշում, միջնադարի աշխարհայացքը գերազանցապես աստվածաբանական բնույթ ուներ: Եկեղեցական դոգման ամեն մի մտածողության ելակետն ու հիմքն է դառնում: Աստվածաբանական բաժիններ են դառնում գաղափարախոսության մյուս ձևերը՝ փիլիսոփայությունը, քաղաքականությունը, իրավաբանությունը: Մասսաների զգացմունքները սնվում էին բացառապես կրոնական կերակրով (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երեք հատորով, հ. 3, էջ 491): Եկեղեցական դոգմաները, Էնգելսի բնութագրմամբ, միաժամանակ դառնում են քաղաքական աքսիոմաներ: Թվում է, թե համաշխարհային կրոնների տարածմամբ պետք է, որ կրոնն այլևս չազդեր էթնոսի վրա, ընդհակառակը, պետք է կրեր վերէթնիկական բնույթ: Մինչդեռ իրականում այդպես չի ստացվում: Համաշխարհային կրոնների տարատեսակները, թափանցելով առանձին ժողովուրդների մշակույթի ու կենցաղի, ազգային հոգեբանության ոլորտները, տեղայնացվեցին, ազգային նկարագիր ձեռք բերեցին, ազգայնացվեցին: Ամենակոսմոպոլիտ կրոնն էլ ազգայնացվում է, որի հետևանքով տվյալ ազգի ներսում ոչ միայն այլ դավանանքի, այլև նույն դավանանքի մեկ ուրիշ տարատեսակը դիտվում է որպես ոտնձգություն ոչ միայն տվյալ կրոնի, եկեղեցու տիրույթի, այլև ազգի գոյության նկատմամբ, որովհետև կրոնափոխությունը ներկայացվում է ազգափոխության զգեստով:

Ժողովուրդների զարգացման վաղ փուլերում ազգային ինքնագիտակցության անզարգացածության հետևանքով շատ հաճախ ազգային ու կրոնական գիտակցությունները համընկել են և կամ էլ ազգայինի մեջ գերիշխող է եղել կրոնականը: Նման դեպքերում հիմնականում կրոնն է ազգը միավորել գաղափարական կապերով: Ֆ. Էնգելսը, խոսելով միջնադարում կաթոլիկ եկեղեցու կատարած դերի մասին, նշում է. «Եվրոպական աշխարհը, որը փաստորեն զուրկ էր ներքին շուկայից, միավորվել էր քրիստոնեության կողմից արտաքին ընդհանուր թշնամու՝ սարակինոսների դեմ: Արևմտաեվրոպական աշխարհն, որն իրենից ներկայացնում է ժողովուրդների մի խումբ, որոնց զարգացումը տեղի է ունեցել շարունակ փոփոխվող փոխհարաբերությունների պայմաններում միավորվել է կաթոլիկության կողմից» (Маркс К., Энгельс Ф., Соч., т. 21, с. 495): Նման դեր է կատարել քրիստոնեական եկեղեցու միաբնակության տարատեսակը հայ իրականության մեջ: Հակադրվելով հունական, հռոմեական, իսկ հետագայում մահմեդական կրոնաքաղաքական նվաճողական ձուլող քաղաքականությանը, հայ եկեղեցին իր շուրջն է համախմբել ժողովրդին, նպաստել նրա կրոնաազգային համախմբմանը:

Էթնիկական և կրոնական փոխազդեցությունների կարևոր բնագավառ են մշակույթն ու կենցաղը: Դարերի ընթացքում թափանցելով մշակույթի ու կենցաղի ոլորտները, կրոնը ներառել է ազգային սովորույթները, որոնք անցնելով պաշտամունքի բնագավառը՝ կրոնականացվել են, իսկ մյուս կողմից էլ կրոնն ինքն է կարծես տարրալուծվել ազգային սովորույթների, կենցաղի մեջ և ազգայնացվել:

Այսպիսով, կրոնի և ազգայինի փոխազդեցությունը և փոխներգործությունը զգալի են եղել մինչև կապիտալիստական հարաբերությունների ձևավորումը: Այդ շրջանում կրոնը հատկապես մշակույթի և հոգեբանության միջոցով (որովհետև ներծծված էր նրանց մեջ) ազդում է ազգագոյացման պրոցեսի վրա, թեև ինքը, այնուամենայնիվ, ազգի հիմնական հատկանիշ չի դառնում:

Կապիտալիստական հարաբերությունների ձևավորումից սկսած հասարակական գիտակցության շատ ձևեր անջատվում են կրոնից, դիտվում է հասարակական կյանքի ապակրոնացում, որի հետևանքով անհատական ու հասարակական գիտակցության մեջ կրոնի ու կրոնականի դերն աստիճանաբար նվազում է, իշխող է դառնում բնության ու հասարակության ոչ կրոնական ընկալումն ու իմաստավորումը: Էթնիկական հանրության ներսում առաջին պլանի վրա են մղվում տնտեսական, քաղաքական ու սոցիալական կարգի գործոններ, սկսում է ազգայինից կրոնականի զատման ու զտման պրոցեսը, որի հետևանքով ազգ կազմող հատկանիշը այլևս տվյալ ազգի մեծամասնության կողմից դավանած կրոնը չի համարվում:

Հետևաբար, XIX դարի կեսերի լուսավորիչները, անշուշտ, ծայրահեղության մեջ էին ընկնում, երբ ազգագոյացման պրոցեսում կրոնի դերը բոլորովին չէին ընդունում: Բայց, դրանով հանդերձ, հանդես գալով որպես բուրժուական հարաբերությունների ձևավորման շրջանի գաղափարախոսներ, երբ ազգի ապակրոնացման պրոցեսն էր ընթանում, երբ կրոնը որպես հասարակական երևույթ դադարում էր ազգի ձևավորման գործում շատ թե քիչ նշանակալից դեր կատարել, նրանք միանգամայն իրավացի էին՝ նշելով, որ կրոնն ու ազգը պատկանում են սոցիալական կյանքի տարբեր ոլորտներին և ճիշտ չէ կրոնական հատկանիշով ազգությունը որոշելը:

Լուսավորիչները միանգամայն իրավացի էին ներկայի և հատկապես պատմական հեռանկարի տեսանկյունից, երբ այն համոզմունքն էին հայտնում, թե ապագայում կրոնը դադարելու է գոյություն ունենալուց, իսկ ազգը շարունակելու է իր գոյությունը: Նրանց ուսմունքը լուրջ ներդրում է աթեիզմի տեսության մեջ: Մեծ նշանակություն ունեցավ նրանց պայքարը հատկապես հայ ժողովրդի քաղաքական համախմբման, համազգային միության ստեղծման գործում:

---

վեն այդ խրամատները և միացած պետք է գնալ թշնամու դեմ և այսպես կռվել»[1]։ Նրա զայրույթը հիմնականում ուղղված էր մշակականների, դաշնակցության և սահմանադիր-ռամկավար կուսակցության գործիչների դեմ։

Ավելին, Անդրանիկի օրգան «Հայաստան» թերթն իրեն դրսևորեց որպես Կովկասում միակ ազգային-դեմոկրատական քաղաքական հոսանք, որը վճռականորեն դեմ էր իմպերիալիստական պատերազմը շարունակելուն։ Հոկտեմբերի 31-ին, երբ Պետրոգրադում հաղթել էր սոցիալիստական հեղափոխությունը, այդ թերթը գրում էր. «Հայաստանը մայրաքաղաքի այս տագնապի մեջ կարող է ամենեն շատ շահագրգռվել, որովհետև մեծամասնականներու (բոլշևիկների—Վ. Մ.) հաջողության առաջին ակտը պիտի ըլլա պատերազմին որևէ ձևով վերջ տալը»[2]։

Դաշնակցությունը, օրինակ, բազմաթիվ ժողովներում ու շրջանային համագումարներում սովորաբար պաշտպանում էր երկու լոզունգներ՝ «Խորացնել հեղափոխությունը» և «Շարունակել պատերազմը»։ Իրեն սոցիալիստական կուսակցություն համարող դաշնակցություն կուսակցությունը այս երկու իրարամերժ հայտարարություններով և, մանավորապես, հեղափոխության խորացումը հաղթական պատերազմի միջոցով լուծելով կանգնում էր անխուսափելի փակուղու առջև։ Ստ. Շահումյանը փետրվարյան հեղափոխության շրջանում դաշնակցությունը դիտում էր որպես հայ իրականության առավել ազդեցիկ մարտունակ ազգայնական ուժ։ Վերջինիս համեմատելով «ծերացած ու ռեակցիոն «Մշակի» հետ , Ստ. Շահումյանը գրում էր. «Դա ինքը հայ դեմոկրատիան է, մոլորված, շշմած, քաղաքականապես տգետ և կույր առաջնորդների ձեռքին խաղալիք դարձած հայ դեմոկրատիան» (Ստ. Շահումյան, Եկժ, հ. 3, էջ 43)։

Հայկական հարցի լուծման դաշնակցության սկզբունքը ազգերի ինքնորոշումն էր, դեմոկրատական միացման պահանջը, սակայն իրենք էլ քաջ գիտակցում էին, որ այդ «դեմոկրատական» միացումը անպայման բռնի էր կատարվելու, այսինքն Արևմտյան Հայաստանը անեքսիայի էր ենթարկվելու։ Այստեղից էլ նրանց հիմնական հակասությունը հայ բոլշևիկների հետ, որոնք դաշնակցության աչքում հանդես էին գալիս որպես «բանակը ցլատողներ»։

[1] Տե՛ս Դ. Անանուն, նշված տեղը, էջ 56։

[2] Տե՛ս Հայաստան, Թիֆլիս, 1917, 31 հոկտեմբերի։

Վ. Ի. Լենինը այս առթիվ գրում էր. «Ով դեմ է անջատման ազատությանը, նա կողմնակից է անեխսիային» (Եկժ, հ. 32, էջ 3)։ Միաժամանակ ուշագրավ է ՌՍԴԲ(բ)Կ յոթերորդ (ապրիլյան) համառուսաստանյան կոնֆերանսում Լենինի արտահայտած միտքն այն մասին, թե «ազգերի ազատորեն անջատվելու իրավունքի հարցը, անթույլատրելի է շփոթել այս կամ այն ազգի, այս կամ այն պահին անջատվելու նպատակահարմարության հարցի հետ» (Եկժ, հ. 31, էջ 539)։

Հայ մտավորականության մեծ մասին, ինչպես նաև դաշնակցությանը պատել էին խոր հակասություններ։ Դաշնակցության մեջ արդեն 1917 թ. ապրիլին պառակտում էր սկսվել։ Նրանց Կովկասյան շրջանային ժողովում ձևավորվել էր ձախ դաշնակցականների բլոկը, որոնք դեմ էին իմպերիալիստական պատերազմը շարունակելու քաղաքականությանը։[1]

Ինչ վերաբերում էր էսէռական ու մենշևիկյան հայ գործիչներին, ապա նրանք հիմնականում խուսափում էին հայկական և անգամ ազգային հարցը բարձրացնելուց՝ թողնելով այն Սահմանադիր ժողովին, այլ խոսքով՝ դեպքերի ընթացքին։ «Հայ ժողովրդական կուսակցությունը» սահմանադիր ռամկավար, հնչակյան ու սպեցիֆիկյան կուսակցությունները պաշտպանում էին Հայաստանի ինքնավարության գաղափարը, միաժամանակ շեշտելով Ռուսաստանից անբաժան լինելու խիստ անհրաժեշտությունը։ Առաջարկվում էր նաև միջազգային կոնֆերանսին դիմելու գաղափարը, որի ոգեշնչողը Պողոս-Նուբար փաշան էր։

Հայ քաղաքական ուժերի ծրագրերը անվերապահորեն կապվում էին պետրոգրադյան իրադարձությունների զարգացման, ինչպես նաև արտաքին աշխարհի քաղաքական անցուդարձի հետ, որոնք մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը իրական ուղիներ չառաջադրեցին հայկական հարցի լուծման ճանապարհին։

Փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխությունը հսկայական ռուսական պետության համար չդարձավ սոցիալ-տնտեսական, քաղաքական ու ազգային կենսական խնդիրների լուծման միջոցը։ Այդ հարցերը պետք է իրենց արմատական լուծումը ստանային և իրոք ստացան հաղթական սոցիալիստական հեղափոխությամբ։

**Վ. ՄԵԼԻՔՅԱՆ**

[1] Տե՛ս Հորիզոն, 1917, 6 ապրիլի։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՆԴՐԿՈՎԿԱՍԸ՝ ՌԱԶՄԱՃԱԿԱՏԻ ՀԶՈՐ ԶԻՆԱՆՈՑ

**Ս. ՀՈՌՈՓՅԱՆ**

## (ԿՈՎԿԱՍԻ ՀԱՄԱՐ ՄՂՎԱԾ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ ԱՎԱՐՏՄԱՆ 45-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Վ. Ի. ԼԵՆԻՆԸ մատնանշում էր, որ «պատերազմում հաղթում է նա, ով ավելի շատ ռեզերվներ, ավելի շատ ուժի աղբյուրներ, ավելի շատ դիմացկունություն ունի ժողովրդական ընդերքում» (ԵԼԺ, հ. 39, էջ 295)։ Նա առանձնապես ընդգծում էր, որ «պատերազմն ամեն մի ազգի բոլոր տնտեսական և կազմակերպական ուժերի ստուգումն է» (նույն տեղը, էջ 393)։ Հիրավի Կովկասի համար մղված ճակատամարտը պատերազմական գործողությունների այն յուրահատուկ թատերաբեմն էր, որտեղ վառ ու համոզիչ հաստատումը գտան լենինյան խոսքերը։

Ճակատամարտը Կովկասի համար տևեց 15 ամիս՝ 1942 թվականի հուլիսի 27-ից մինչև 1943 թվականի հոկտեմբերի 9-ը և հանդիսացավ Հայրենական մեծ պատերազմի ամենավառ էջերից մեկը։ Անդրկովկասի հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների գործունեությունն այդ ճակատամարտի ընթացքում, որը հաղթականորեն ավարտվեց 45 տարի առաջ, բազմակողմանի էր։

1942 դաժան թվականն էր։ Գերմանաֆաշիստական հրամանատարությունը, օգտվելով Եվրոպայում երկրորդ ճակատի բացակայությունից, կենտրոնացրել էր խոշոր խմբավորումներ, ձեռնարկել իր զորքերի մի նոր հարձակում, որպեսզի Ստալինգրադի շրջանում ճեղքի և դուրս գա Վոլգա գետը, տիրի Կովկասին, հասնի Մերձավոր ու Միջին Արևելքի նավթի աղբյուրներին։ Այդ ստրատեգիական ուղղություններում թշնամին ուներ կենդանի ուժի ու տեխնիկայի մեծ գերակշռություն և հասել էր որոշակի օպերատիվ հաջողությունների։ Կովկասյան ուղղությունում 1942 թվականի սկզբին գերմանաֆաշիստական զորքերը, հասնելով Կովկասյան մեծ լեռնաշղթայի լեռնանցքներին, տիրեցին դրանցից մի քանիսին և ստեղծեցին Անդրկովկաս ներխուժելու անմիջական սպառնալիք։ Միաժամանակ թշնամին խոշոր ուժեր փոխադրեց դեպի Բաքվի և Տուապսեի ուղղությունները։ Կովկասում բացառիկ ծանր իրադրություն էր ստեղծվում մեր զորքերի համար։ Սեպտեմբերի 9-ին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն քննարկելով ստեղծված իրավիճակը, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեց Կովկասի պաշտպանությունն ամրապնդելու համար։ Զինվորական հրամանատարության ստացած կողմնորոշիչ ցուցումների հետ միասին լուծվում էր նաև այդ ուղղությունում գործող զորքերի անխափան մատակարարման հարցը։

«ՍՄԿԿ պատմության» V հատորում ասված է. «Գերմանաֆաշիստական զորքերի ներխուժումը Հյուսիսային Կովկաս Անդրկովկասը կտրեց երկրի կենտրոնից։ Զգալիորեն դժվարանում էր Անդրկովկասյան ռազմաճակատի մատակարարումը, դադարել էր հումքի ու սարքավորումների ստացումը։ Ուստի Անդրկովկասի հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների կարևորագույն խնդիրն էր այն դարձնել Կովկասը պաշտպանող զորքերի հիմնական զինանոց ու պարենային բազա։ Ռազմական արտադրության հարցերը չէին հանվում Անդրկովկասի կոմկուսակցությունների կենտկոմների բյուրոների նիստերի օրակարգից» (История Коммунистической партии Советского Союза, т. 5, кн. I, М., 1970, стр. 333)։

Այս որոշմանը համապատասխան ՊՊԿ-ն Անդրկովկասյան ռազմաճակատին ուղարկում էր գլխավորապես տանկեր, ինքնաթիռներ և հրետանի։ Մնացած ամեն ինչ պարտավոր էին ապահովել Անդրկովկասի հանրապետությունները։

Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի

ՀՈՌՈՓՅԱՆ ՍՏԵՓԱՆ ՍԱՐԳՍԻ— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պատմության ինստիտուտի՝ ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ մասնաճյուղի գիտաշխատող։

քի համար անհրաժեշտ նյութերի լրիվ կոմպլեկտ: Առանձնապես կրիտիկական դրություն էր ստեղծվել, օրինակ, Վրաստանում՝ քրոմի անհիդրիդի ու թերթավոր պողպատի արտադրության բացակայության պատճառով: Այդ կապակցությամբ հանրապետության կուսակցական մարմինները դիմեցին միութենական մարմիններին: Բայց ստացվում էին անմխիթարական պատասխաններ: Դրանցում ասված էր, որ անհիդրիդի հարցով հարկավոր է դիմել Հայաստանին, որտեղ Երևանի մի շարք ձեռնարկություններում արդեն ստանում են զանազան քրոմային աղեր և կարող են ապահովել նաև Թբիլիսիի հրազեն արտադրող գործարանի պահանջմունքները[1]:

Երևան ժամանեց վրացի մեքենաշինարարների ներկայացուցիչը՝ Վրաստանի Կ(բ)Կ Թբիլիսիի քաղկոմի քարտուղար Ս. Իշխանովի նամակով, որտեղ մատնանշված էր, որ «Թբիլիսիի ձեռնարկություններում պատրաստվող Շպագինի գնդացիր-ատրճանակի փողանցքը քրոմապատելու համար անհրաժեշտ է քրոմի անհիդրիդ, որպես քրոմապատման վաննայի հիմնական բաղադրամաս: Քրոմի անհիդրիդ Վրացական ՍՍՀ-ում չկա»[2]: Կուսակցության քաղկոմը Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղար Ա. Սարկիսյանցին խնդրում էր անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել Թբիլիսիի մեքենաշինարարների պահանջմունքներն ապահովելու համար: Այդ հարցը շուտով լուծվեց: Անդրկովկասյան երեք հանրապետությունների կուսակցական կազմակերպությունների համատեղ ջանքերով օպերատիվ կերպով լուծվեց նաև թերթավոր հատուկ պողպատի առաքման հարցը, որի բացակայության պատճառով Թբիլիսիի գործիքաշինական գործարանում դադարեցվել էր ՊՊՇ-ի պատրաստումը: Բնորոշ է, որ եթե 1942 թվականի առաջին եռամսյակում գործող բանակը Վրաստանից ստացել էր 6873 ՊՊՇ, ապա չորրորդ եռամսյակում այդ թիվն արդեն հասել էր 20.710-ի, այսինքն՝ աճել էր ավելի քան երեք անգամ:

Ռազմական էկոնոմիկայի ինտենսիվացման ու հետագա զարգացման խնդիրների իրականացման գործում հսկայական դեր խաղաց 1942 թվականի մայիսին սկսված համամիութենական սոցիալիստական մրցությունը: Մայիսմեկյան տոնի նախօրյակին ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն երկրի աշխատավորներին կոչ արեց ամեն կերպ ուժեղացնել օգնությունը ռազմաճակատին, արագացնել ռազմական պատվերների կատարման տեմպերը: Պատասխանելով կուսակցության կոչերին, մի շարք առաջավոր մետալուրգիական և ինքնաթիռաշինական գործարանների կոլեկտիվներ հանդես եկան հայրենասիրական նախաձեռնությամբ՝ համամիութենական սոցիալիստական մրցություն սկսել ըստ արդյունաբերության ճյուղերի: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն 1942 թվականի մայիսի 4-ի և 6-ի իր որոշումներով պաշտպանեց արժեքավոր նախաձեռնությունը և առաջարկեց ՀԱՄԿԻՄ-ին և ՍՍՀՄ համապատասխան ժողկոմատներին՝ գլխավորել այդ հայրենասիրական շարժումը (տե՛ս История КПСС, т. 5, кн. I, стр. 441 — 442): Մետալուրգներից ո ավիաշինարարներից հետո, Բաքվի նավթագործների նախաձեռնությամբ, սոցիալիստական մրցությունը ծավալվեց նաև նավթարդյունահանող ճյուղի աշխատողների շրջանում: Շուտով այն ընդգրկեց արդյունաբերության բոլոր մյուս ճյուղերը:

Համամիութենական սոցիալիստական մրցությանն ակտիվորեն սկսեցին մասնակցել նաև գյուղատնտեսության աշխատողները: «Կուսակցությունը,— նշված է «ՍՄԿԿ պատմության» V հատորում,— սոցիալիստական մրցությունն օգտագործում էր ոչ միայն որպես աշխատանքի արտադրողականության բարձրացման, ռազմաճակատի համար արտադրության ավելացման հզոր լծակ, այլև որպես աշխատավորների, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության երիտասարդ համալրման աշխատանքային ու քաղաքական դաստիարակության ներգործուն միջոց» (նույն տեղը):

Հաշվի առնելով սոցիալիստական մրցության հսկայական դերը ժողովրդական տնտեսությունը ռազմական ռելսերի վրա փոխադրելու գործի հաջող ավարտման և թիկունքի աշխատողների աշխատանքային ակտիվության հետագա զարգացման գործում, 1942 թվականի հունիս-հուլիսին Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսակցությունների կենտկոմները պլենումներ անցկացրին այդ հարցի վերաբերյալ: Նրանց որոշումները քննարկվեցին կուսակցության մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների պլենումներում, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում: Դա սոցիալիստական մրցությանը հաղորդեց է՛լ ավելի լայն թափ ու արդյունավետություն:

Ձեռնարկված բոլոր միջոցների շնորհիվ մինչև 1942 թվականի ամառվա կեսերը, այսինքն՝ մինչև Կովկասի համար ճակատամարտի սկսվելը, Ադրբեջանի նավթար-

[1] Տե՛ս ՄԼԻ վրաց. մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 17, ց. 3, գ. 275, թ. 66։

[2] Նույն տեղը։



դյունաբերությունից և նավթավերամշակող արդյունաբերությունից բացի, որոնց արտադրանքը սկզբից ևեթ օգտագործվում էր պաշտպանական կարիքների համար, ռազմական արտադրանքի թողարկման փոխադրվեցին նաև մեքենաշինական մետաղամշակման և քիմիական արդյունաբերության բոլոր ձեռնարկությունները, արհեստագործական կոոպերացիայի շատ արտելներ: Անդրկովկասյան հանրապետություններում ստեղծվեց համակարգված ռազմական տնտեսություն, որն ուներ պոտենցիալ մեծ հնարավորություններ և ունակ էր տեղական ռեսուրսների հիման վրա հաջողությամբ կատարել կուսակցության ու կառավարության պատասխանատու ռազմատնտեսական առաջադրանքները: Դա անգնահատելի դեր կատարեց ոչ միայն Կովկասի պաշտպանության ընթացքում, այլև մեր բանակի հետագա հարձակողական գործողությունների ժամանակաշրջանում:

Պատերազմի պայմաններում առաքումների հայտերի ժամանակին կատարումն ուներ հսկայական նշանակություն: Սակայն տեղի ունեցող խափանումները երբեմն սպառնալի դրություն էին ստեղծում ինչպես Ադրբեջանի, այնպես էլ Հայաստանի փոխկապակցված ձեռնարկությունների համար: Ահա բնորոշ օրինակներից մեկը: 1942 թվականի սեպտեմբերի 15-ին Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմը Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղար Ա. Սարկիսյանցին էր ուղարկել մի նամակ, որտեղ ասված էր, որ պաշտպանության պետական կոմիտեի հուլիսի 15-ի որոշմանը համապատասխան Ադրբեջանի նավթակոմբինատը երրորդ եռամսյակում Երևանի «Սովպրեն» կոմբինատից պետք է ստանար 10 վագոն կարբիդ, 40 տոննա աղաթթու, 10 տոննա ռետին սռնձի համար և 5 տոննա կալանդրացված ռետին: Սակայն կոմբինատը մինչև այժմ ՊՊԿ-ի այդ որոշումը չի կատարել և դրանով իսկ սպառնալիքի տակ դրել ինչպես նավթի արդյունահանման, այնպես էլ ռազմապաշարի ու սպառազինությունների թողարկման պլանի կատարումը Ադրբեջանի նավթակոմբինատի կողմից[1]:

Ստանալով այդպիսի տագնապալի նամակ և պարզելով արտադրանքի թվարկված քանակության առաքման ձգձգման պատճառները, Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմն ուղարկեց պատասխան նամակ, որտեղ կոնկրետ մատնանշեց, թե որքան և ինչ է արդեն ուղարկվել մինչև սեպտեմբերի 29-ը: Նշվում էր նաև, որ կոմբինատը 1942 թվականի հունիս-հուլիս ամիսների ընթացքում չէր ստացել տանիքի երկաթ, որի պատճառով էլ չէր կարողացել ուղարկել կարբիդը: Բացի դրանից, Նախիջևանի աղահանքերը վատ են կատարել իրենց պայմանագրային պարտավորությունները՝ Երևանի «Սովպրեն» կոմբինատը համապատասխան աղով, իսկ Ադրբեջանի նավթակոմբինատը բենզոլով ապահովելու գործում: Հենց այդ պատճառով էլ ձեռնարկությունում կրճատվել էր կաուստիկ սոդայի թողարկումը: Սպառիչ բացատրություններ տրվեցին նաև թերառաքված մյուս արտադրատեսակների վերաբերյալ:

Երկու հանրապետությունների ակտիվ նամակագրությունը, նրանց ներկայացուցիչների հանդիպումները շարունակվում էին ռազմատնտեսական համագործակցության այլ հարցերի շուրջը ևս: Եվ այդ հանդիպումները, փոխադարձ օգնությունը Անդրկովկասի հանրապետությունների համար դարձել էին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի 1942 թվականի սեպտեմբերի 9-ի որոշմամբ նրանց առջև դրված բացառիկ պատասխանատու խնդիրների հաջող կատարմանը նպաստող նրանց մղած պայքարի արդյունավետ միջոցներ:

Այդ որոշման կապակցությամբ Վրաստանում, Հայաստանում և Ադրբեջանում մշակվեցին ու իրականացվեցին կուսակցական-կազմակերպական և ռազմատնտեսական կարևոր միջոցներ: Այսպես, նոր պայմաններում Հայաստանի արդյունաբերության աշխատանքի հետ կապված հարցերը համակողմանիորեն քննարկվեցին ձեռնարկությունների դիրեկտորների, տեխնիկական ղեկավարների և սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների խորհրդակցությունում, որը կայացավ Երևանում 1942 թվականի սեպտեմբերի 16-ին: Նրա աշխատանքին մասնակցեցին նաև հանրապետության արդյունաբերական ճյուղերի բոլոր ժողկոմները, տրեստների ղեկավարները: Խորհրդակցության մասնակիցները լսեցին Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի առաջին քարտուղար Գ. Ա. Հարությունյանի հանգամանալից զեկուցումը: Մանրամասն վերլուծելով պաշտպանական պատվերների կատարման գործերի վիճակը մի ժամանակաշրջանում, երբ կատաղի կռիվ էր մղվում Կովկասի համար, զեկուցողը խիստ քննադատեց մի շարք ձեռնարկությունների ու դրանց ղեկավարների անբավարար աշխատանքը:

Ստեղծված պայմաններում Հայաստանի համար անչափ սուր պրոբլեմ էր դարձել նրա ռազմական էկոնոմիկայի ապահովումը վառելիքով: Խորհրդակցությունում խոսվեց այն մասին, որ հանրապետության

[1] Տե՛ս ՄԼԻ ադրբեջ. մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 192, գ. 100, թ. 40։

պետպլանը, ժողկոմատները և ձեռնարկությունների վարչատեխնիկական ղեկավարները պարտավոր են ամենակարճ ժամկետում մշակել այդ պրոբլեմի լուծմանն ուղղված միջոցներ: Առաջարկվում էր որոշ ձեռնարկություններ էլեկտրաէներգիայից փոխադրել պինդ վառելիքի՝ ավելի լայնորեն օգտագործելով տեղական ռեսուրսները: 1942 թվականի սեպտեմբերի 28-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմն ընդունեց Ջաջուռի հանքավայրում ածխի արդյունահանումն ավելացնելու, տորֆի կոքսի արտադրությունն ընդլայնելու և Բասարգեչարից Երևան տորֆ առաքելու մասին որոշումը[1]: Արդյունքները ծանրակշիռ էին: Երևանի արդյունաբերական ձեռնարկությունները հարանուն քանակություններով սկսեցին ստանալ տեղական արտադրության ածուխ և տորֆ:

Առանձնահատուկ հսկողության տակ էր ռազմամթերքների արտադրությունը: 1942 թվականի սեպտեմբերի 25-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն ընդունեց ռազմամթերքների թողարկումն ավելացնելու միջոցառումների մասին որոշում և հաստատեց 4-րդ եռամսյակի պլանը[2]: Հանրապետությունում ռազմամթերքների առաջատար արտադրողներ էին Ձերժինսկու անվան մեքենաշինական, Լենինականի մեխանիկական գործարանները և Կիրովականի քիմիական կոմբինատը: ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն հանրապետության ժողկոմխորհին առաջարկեց Ձերժինսկու անվան գործարանին հանձնել ուրիշ ձեռնարկությունների նյութերի ավելցուկները, հնգօրյա ժամկետում մոբիլիզացնել 70 որակյալ բանվորների, այդ թվում՝ 30 խառատի, 20 ձուլողկաղապարողի և 20 փականագործի ու նրանց գործուղել ռազմամթերք պատրաստող ձեռնարկություններ: Կենտկոմը պարտավորեցրեց նաև կուսակցության Երևանի, Լենինականի քաղկոմների ու Կիրովականի շրջկոմի քարտուղարներին՝ հատուկ վերահսկողություն սահմանել ռազմամթերք պատրաստող ձեռնարկությունների աշխատանքի նկատմամբ և գործնական օգնություն ցույց տալ դրանց դիրեկտորներին[3]:

Սակայն նախանշված միջոցառումների հաջող իրականացման համար հանրապետությունն զգում էր սարքավորումների, նյութերի և հումքի շատ տեսակների կարիք: Ուստի հայտեր ուղարկվեցին զանազան մարմիններ: Այսպես, Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը դիմեց Վրացական ՍՍՀ ժողկոմխորհին՝ խնդրելով հոկտեմբերի առաջին կեսին Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանի և Երևանի մետաղանորոգման գործարանի համար հատկացնել 25-հազարական հրակայուն աղյուս, 16 տոննա հրակայուն կավ, 30 տոննա կվարցի ավազ և 80 տոննա Սուրամի հող: Համապատասխան հայտեր ուղարկվել էին նաև Գլավմետալլոսբիտի անդրկովկասյան բազաներին և այլն:

Ինտենսիվ միջոցառումներ էին իրականացվում նաև Վրաստանում ու Ադրբեջանում: Դրանց մեծ մասն անմիջականորեն կապված էր առաքումների հետ: Այսպես, 1942 թվականի դեկտեմբերի 23-ին Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղար Ա. Յակուբովը դիմեց Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի քարտուղար Ի. Սոչինսկուն մի նամակով, որտեղ ասված էր, որ Բաքվում խոր պոմպերի արտադրության համար չափազանց անհրաժեշտ քրոմի անհիդրիդ չլինելու պատճառով դրանց թողարկումը դադարեցված է: Նշվում էր, որ նավթի, հատկապես օկտան պարունակող նավթի արդյունահանումն ավելացնելու վերաբերյալ ՊՊԿ-ի որոշման կատարումն անմիջականորեն պայմանավորված է խոր պոմպերի թողարկումով: Կենտկոմը խնդրում էր շուտափ կարգով հատկացնել և Ձերժինսկու անվան գործարանին առաքել մեկ տոննա քրոմի անհիդրիդ կամ քրոմնիկ[1]:

Եղբայրական հանրապետություններից ստացվող շատ հայտեր անմիջապես դառնում էին կուսակցական մարմինների քննարկման առարկա: Այսպես, 1943 թվականի հունվարին Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմի բյուրոն քննարկեց «Ռետինարդժողկոմատի Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանում ավտոդողերի արտադրության կազմակերպման գործում օգնություն ցույց տալու մասին» հարցը[2]: Կենտկոմի բյուրոն հանձնարարեց հանրապետության ժողկոմխորհին և Ադրբեջանի ժողկոմխորհի ու Կ(բ)Կ Կենտկոմի էվակոբեռների գծով լիազորին՝ «ըստ ամենայնի օգնություն ցույց տալ ռետինարդժողկոմատի ներկայացուցիչներին՝ Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանի շինարարության համար անհրաժեշտ նյութեր ու սարքավորումներ առանձնացնելու և առաքելու գործում, որոնք կան հանրապետության էվակոբազաներում ու կոնսերվացված շինարարություններում, ինչպես նաև գործող ձեռնարկություններում չօգ-

[1] Տե՛ս ՄԼԻ Հայկ. մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 26, թ. 117—118։

[2] Տե՛ս նույն տեղը, գ. 27, թ. 153—155։

[3] Տե՛ս նույն տեղը, թ. 155։

[1] Տե՛ս ՄԼԻ ադրբեջ. մասնաճյուղի կուսարխիվ, ֆ.1 , ց. 192, գ. 100, թ. 44։

2. Նույն տեղը, ց. 121, գ. 15, թ. 256։



տագործվող նյութերից ու սարքավորումներից»[1]: Մոնտաժային աշխատանքների կատարումն արագացնելու համար որոշում ընդունվեց նաև հանրապետության ձեռնարկություններում ու կառույցներում մոբիլիզացնել և ժամանակավորապես Երևան՝ գործարանի շինարարություն ուղարկել 20 փականագործ-մեխանիկների, 10 փականագործ-խողովակաշարողների, 3 եռակցողի, 7 էլեկտրամոնտյորի և այլն[2]:

Այս փաստերը խոսում են այն մասին, որ արդյունաբերության այնպիսի կարևոր պաշտպանական ճյուղեր, ինչպիսիք են ադրբեջանական նավթարդյունաբերությունը և հայկական քիմիական արդյունաբերությունը, ոչ միայն Կովկասի համար մղված ճակատամարտի ժամանակաշրջանում, այլև ամբողջ պատերազմի ընթացքում խիստ կախված են եղել մեկը մյուսից, և սերտ փոխգործողության ու փոխօգնության շնորհիվ միայն այդ երկու ճյուղերը կարողացան հաջողությամբ կատարել պաշտպանության պետական կոմիտեի հարանուն առաջադրանքները:

Մարտական տեխնիկայի մի քանի տեսակների արտադրությունն ամենաանմիջական կերպով կապված էր Անդրկովկասի երեք հանրապետությունների մեքենաշինական գործարանների գործունեության հետ: Թերևս ամենավառ օրինակ կարող է ծառայել ինքնաթիռների թողարկումը: Ինքնաթիռների համար շարժիչներ արտադրում էին հայ մեքենաշինարարները, թևերը՝ ադրբեջանցիները, իսկ մնացած մասերն ու հավաքումը կատարում էին վրացի շինարարները: Այս բարդ, սերտ փոխկապակցված արտադրական պրոցեսի ցանկացած օղակում առաջացող նվազագույն ձգձգումը կարող էր լուրջ դժվարություններ հարուցել մարտական ինքնաթիռները ռազմաճակատ առաքելու գործում: Անդրկովկասի երեք եղբայրական հանրապետությունների կուսակցական և տնտեսական մարմիններին հաջողվեց հստակորեն կազմակերպել համատեղ արտադրությունը, ռազմական պատվերները կատարվում էին ժամանակին ու որակով: Հենց սերտ կոոպերացման շնորհիվ Երևանում, Բաքվում և Թբիլիսիում դեռ Կովկասի համար ճակատամարտն սկսվելուց առաջ արդեն կարգավորվել էր մարտական ինքնաթիռների թողարկումը, իսկ պատերազմի ընթացքում մեքենաշինարարներն ավելացնում էին դրանց արտադրությունը:

Վրաստանի և Հայաստանի կուսակցական արխիվներում պահվում են մեծ քանակությամբ նամակներ ու փաստաթղթեր, որոնք վկայում են պատերազմի ժամանակաշրջանում տնտեսական համագործակցությունն ըստ ամենայնի ամրապնդելու ուղղությամբ երկու հանրապետությունների գործադրած համատեղ ջանքերի մասին: Այսպես, Երևանի կարբիդի և Թբիլիսիի էլեկտրամեխանիկական գործարանները սերտ փոխգործողության մեջ էին. Երևանի գործարանը Թբիլիսիից ստանում էր մետաղյա արմատուրա՝ ռազմադաշտային հեռախոսային ապարատների պլաստմասսայի կորպուսներ և խոսափողի մասեր պատրաստելու համար: Երևանցիներն իրենց արտադրանքն ուղարկում էին Թբիլիսիի էլեկտրամեխանիկական գործարան՝ լրիվ կոմպլեկտավորման համար[1]: Նվազագույն խափանումներն անմիջապես խախտում էին երկու եղբայրական հանրապետությունների հարակից կոլեկտիվների աշխատանքի ողջ ցիկլը: Այդ պատճառով էլ երկու կոլեկտիվների արտադրական գործունեությունը գտնվում էր կուսակցական կազմակերպությունների չթուլացող վերահսկողության տակ:

Կովկասի համար մղված ճակատամարտի ընթացքում անչափ աճել էր 82 միլիմետրանոց ականանետների պահանջը ռազմաճակատի համար: Եվ պատահական չէ, որ 1942 թվականի գարնանից զգալիորեն ավելացավ դրանց թողարկումը Անդրկովկասի մեքենաշինական գործարաններում: Միայն Վրաստանի արդյունաբերությունը մինչև հիշյալ թվականի նոյեմբեր ամիսը պատրաստել ու ռազմաճակատ էր ուղարկել 936 ականանետ: Այստեղ սկսել էին պատրաստել նաև ԲՄ—13 ռեակտիվ ականանետի՝ «Կատյուշայի» հիմնական մարտական մասեր[3]:

Սպառազինությունների ու ռազմամթերքի արտադրությունն ավելանում էր ամսե-ամիս: Այսպես, օրինակ, եթե ամբողջ 1942 թվականի ընթացքում Վրաստանը ռազմաճակատ էր ուղարկել 50696 ՊՊՇ ավտոմատ, ապա միայն 1943 թվականի առաջին յոթ ամսում նրա արդյունաբերությունը թողարկեց 54.540 այդպիսի ավտոմատ: Այդ տարվա ընթացքում բանակը Վրաստանից ստացավ 90 հազար ավտոմատ (տե՛ս Бабалашвили И. П., Вклад Грузии в общее дело победы над фашизмом, Тбилиси, 1975, стр. 161—162):

[1] Տե՛ս ՄԼԻ ադրբեջ. մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 121, գ. 15, թ. 257։

[2] Նույն տեղը, թ. 256։

[1] Տե՛ս ՄԼԻ վրաց. մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 14, ց. 1, գ. 12564, թ. 125—126։

[2] Տե՛ս նույն տեղը, գ. 12359, թ. 32, գ. 12511, թ. 79։

[3] Տե՛ս նույն տեղը, գ. 12275, թ. 241։

Հանրապետությունների միջև տեղի ունեցող նամակագրության առանձնահատկությունն այն էր, որ ոչ մի խնդրանք, ոչ մի հայտ առանց ուշադրության չէր մնում: Կովկասի համար մղված ճակատամարտի թեժ պահին, 1942 թվականի նոյեմբերի 10-ին Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմը Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմին դիմեց մի նամակով, որտեղ ասված էր. «Մոնոքրոմատի բացակայության պատճառով Վրացական ՍՍՀ թեթև արդյունաբերության ժողկոմատի կաշվի գործարաններն ու կոշիկի փաբրիկաներն ի վիճակի չեն կատարելու հատուկ պատվերները: Խնդրում ենք ձեզ՝ պարտավորեցնել Հայկ. ՍՍՀ թեթև արդյունաբերության ժողկոմատին՝ ապահովել Միության թեթև արդյունաբերության ժողկոմատի ֆոնդերով IV եռամսյակի համար հատկացված 42 տոննա մոնոքրոմատի առաքումը Վրաց. ՍՍՀ թեթև արդյունաբերության ժողկոմատին»[1]:

Տառացիորեն մի քանի օր հետո Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմին հաղորդեց ձեռնարկված միջոցների մասին:

Եղբայրական հանրապետություններից ստացվող բոլոր նամակներն ու հեռագրերը, հատկապես եթե դրանք վերաբերում էին ռազմական պատվերների կատարմանը, գտնվում էին ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղարների անմիջական վերահսկողության տակ:

Այսպիսով, Անդրկովկասի հանրապետությունների կոմկուսակցությունները օպերատիվ ու եռանդուն միջոցներ էին ձեռնարկում Կովկասի պաշտպանության և ամբողջ երկրի բախտի համար բացառիկ պատասխանատու, ստրատեգիական տեսակետից կարևոր խնդիրների կատարման նպատակով: Այդ աշխատանքի հաջողության գլխավոր պայմաններից մեկը եղավ լավ կանոնակարգված տնտեսական համագործակցությունը, որն իրականացվում էր այդ բազմազգ երկրամասի ժողովուրդների եղբայրական բարեկամության ու համախմբվածության, սովետական կարգերին նրանց անվերապահ նվիրվածության հիման վրա: Մեր կուսակցության ու նրա մարտական ջոկատների՝ Անդրկովկասի հանրապետությունների կոմկուսակցությունների անչափ հարուստ փորձը մի անգնահատելի կապիտալ է, որն այսօր և՝ վերակառուցման պայմաններում, կարող է կարևոր դեր կատարել սովետական հասարակության քաղաքական ու սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների հաջող լուծման գործում:

[1] ՄԼԻ հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 33, թ. 720։



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆԸ ՆՎԻՐԱԲԵՐԱԾ ԿՅԱՆՔ

## (Ս. Կ. ԱԼԱՎԵՐԴՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

*ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ լենինյան գվարդիայի հայ գործիչների փայլուն համաստեղության մեջ իր պատվավոր տեղն ունի Ստեփան Կարապետի Ալավերդյանը, որն իր հերոսական կյանքն անմնացորդ նվիրեց հայ ժողովրդի ազատության, նրա լուսավոր ապագայի վսեմ գործին։ Դեռ պատանի հասակից մտնելով հեղափոխական շարժումների մեջ, Ս. Ալավերդ-*



*յանը դարձավ Անդրկովկասում հեղափոխական շարժումների ակտիվ կազմակերպիչներից ու Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների, 1920 թ. Մայիսյան համաժողովրդական ապստամբության ղեկավար գործիչներից մեկը։ Կոմունիստական կուսակցության շարքերում նա զինվորագրվեց ռուսաստանյան առաջին հեղափոխության նախօրյակին՝ Քութայիսում, այնուհետև կոփվեց Մոսկվայի բոլշևիկյան կազմակերպությունում, շարունակեց իր հեղափոխական գործունեությունը Թիֆլիսում, Սարիղամիշում ու Երևանում, խոշոր դեր կատարեց աշխատավոր մասսաների հեղափոխական դաստիարակության, Հայաստանում սովետական իշխանության հաստատման համար մղված պայքարում։*

*Ս. Ալավերդյանը ծնվել է 1888 թ. օգոստոսի 13-ին, Քութայիս քաղաքում, ծառայողի ընտանիքում։ Բոլշևիկյան կուսակցության ստեղծումից հետո Անդրկովկասի հեղափոխական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները դառնում են նրա մարտական ջոկատները։ Այստեղ ակտիվ աշխատանք են ծավալում ՌՍԴԲԿ Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի և այլ վայրերի կոմիտեները։ Կուսակցական կազմակերպություն է ստեղծվում նաև Քութայիսում, որի հատկապես սովորող երիտասարդությունը բոլշևիկների ղեկավարությամբ ակտիվորեն արձագանքում է հեղափոխական ամեն մի շարժման։ Աշակերտական կոմիտեի հանձնարարությամբ Ս. Ալավերդյանը տարածում է բոլշևիկյան կոչեր ու թռուցիկներ, բրոշյուրներ, մասնակցում աշակերտական դասադուլներին, ցույցերին, միտինգներին՝ ուղղված ցարիզմի, բուրժուազիայի և բուրժուանացիոնալիստական կուսակցությունների դեմ։*

*1907 թ. ավարտելով Քութայիսի ռեալական ուսումնարանը, Ս. Ալավերդյանը մեկնում է Մոսկվա՝ կրթությունը շարունակելու։ Մեծ դժվարություններ հաղթահարելով, 1908 թ. աշնանը նրան հաջողվում է ընդունվել Մոսկվայի առևտրական ինստիտուտի (այժմ՝ Գ. Վ. Պլեխանովի անվան ժողովրդական տնտեսության ինստիտուտ) տնտեսագիտական բաժանմունքը։ Ուսման տարիներին Ալավերդյանը ներգրավվում է ընդհատակյա հեղափոխական աշխատանքների մեջ՝ Մոսկվայի քաղաքային կուսկազմակերպության Զամոսկվոռեչյեի շրջանային կոմիտեի ղեկավարությամբ, մեծ եռանդով ձեռնամուխ լինում Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների ուսումնասիրմանը, ուշադրությամբ հետևում բոլշևիկյան մամուլին։ Ս. Ալավերդյանը առևտրական ինստիտուտի բոլշևիկյան կազմակերպության հիմնադիրներից ու ղեկավարներից էր, մեծ հեղինակություն էր վայելում հեղափոխական ուսանողության շրջանում։ Ժամանակակիցները հիշում են Ալավերդյանի կրակոտ ելույթները, ակտիվ մասնակցությունը ինստիտուտում ստեղծված հրատարակչական գործին։*

*Առաջին համաշխարհայինի հենց սկզբից Ալավերդյանը վճռականորեն հանդես է գալիս իմ-*

բոցաշունչ հեղափոխականի խոսքերը այն մասին, որ դաշնակների արյունոտ տիրապետության տապալմամբ և երկրում սովետական իշխանության հաստատմամբ միայն կարելի է կործանումից փրկել հայ ժողովրդին։ Ահա թե ինչ է գրում այդ միտինգի մասնակից, 1919 թ. ՍՄԿԿ անդամ Ս. Աստվածատրյանը. «... Պառլամենտի պատշգամբում երևաց Արմենկոմի անդամ, բոլորիս սիրելի Ստ. Ալավերդյանը։ Նրա դեմքն արտահայտում էր անսասան կամք, կուսակցության և ժողովրդի նկատմամբ խորին հավատ, վերջնական հաղթանակի նկատմամբ ներքին անսահման համոզվածություն։ Ինձ վրա անջնջելի տպավորություն թողեց Ալավերդյանի հռետորական տաղանդը, հնչեղ ձայնը։ Նա խոսում էր պատկերավոր, համոզիչ և պոռթկուն տրամաբանությամբ։

Դաշնակները փորձեցին ամեն կերպ խանգարել նրա կրակոտ ճառը, բայց ցուցարարները լռեցրին նրանց։ Աննկուն բոլշևիկը մասսաների երկար ու բուռն ծափերի տակ իր ելույթը վերջացրեց հետևյալ կոչերով. «Կորչի՛ դաշնակների կառավարությունը», «Կեցցե՛ կոմունիստական ինտերնացիոնալը», «Կեցցե՛ անդրկովկասյան ժողովուրդների եղբայրական միասնությունը» («Սովետական Հայաստան», 1959, 1 մայիսի)։

1920 թ. Մայիսյան փառապանծ ապստամբության օրերին Ալավերդյանը Երևանում, անլեգալ պայմաններում, մեծ ջանքեր գործադրեց ապստամբներին օգնություն կազմակերպելու, նրանց ուժերը միավորելու, 11-րդ կարմիր բանակի հետ կապ հաստատելու նպատակով։

Ապստամբության պարտությունից հետո ամբողջ երկրում մոլեգնում է սպիտակ տեռորը, Հայաստանի բանտերը լցվում են ձերբակալվածներով։ Բազմաթիվ բոլշևիկների հետ դաշնակները հունիսի 4-ին բանտ են նետում նաև Ս. Ալավերդյանին։ Մինչև բանտարկությունը Ալավերդյանը զեկուցագիր է ուղարկում ՌԿ (բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեին, որտեղ հանգամանորեն վերլուծում է ապստամբության ընթացքը և նրա պարտության պատճառները։ Այդ ծանր օրերին նա կտրականապես մերժեց իր ընկերների առաջարկը՝ թողնել Հայաստանը դաշնակների դաժան դատաստանից փրկվելու համար։ Նա հրաժարվեց վերցնել ուրիշի անունով իր համար պատրաստված անձնագիրը և ուղեվորության դրամը, ասելով, որ դրանք ավելի շատ պետք կգան ուրիշ ընկերների (տե՛ս Հին բոլշևիկների հիշողություններ, գիրք 1, Երևան, 1958, էջ 390—391)։ Երևանի բանտի մռայլ պայմանները չեն ընկճում Ալավերդյանի կամքը։ Նա կապ է պահպանում խոր ընդհատակում գործող Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների հետ, անհրաժեշտ ցուցումներ տալիս, քաղաքական աշխատանք կատարում բանտարկյալների շրջանում, ոգեշնչում իր ընկերներին գալիք մարտերի համար։

1920 թ. օգոստոսի 13-ի լույս 14-ի գիշերը դաշնակ մաուզերիստները որոշում են գաղտագողի դատաստան տեսնել ականավոր բոլշևիկներ, Հայաստանում սովետական կարգերի համար մղվող պայքարի ակտիվ մասնակիցներ ու ղեկավարներ Ստեփան Ալավերդյանի, Բագրատ Ղարիբջանյանի և Սարգիս Մուսայելյանի նկատմամբ։ Եվ երբ նրանց դուրս են բերում բանտից, Ս. Ալավերդյանը, դառնալով դեպի դահիճները, արտասանում է հետևյալ խոսքերը. «Լավ հիշեցեք, հեղափոխության գործը չի՛ մեռնի։ Հայաստանի բանվորներն ու գյուղացիները տեր կդառնան իշխանությանը։ Իսկ դուք իմացած եղեք, որ իմ թափվելիք արյան յուրաքանչյուր կաթիլի համար կպատասխանեք ձեր հարյուրավոր համախոհների կյանքերով։ Մի կարծեք, որ ձեր չարագործությունը թաքուն կմնա... Կեցցե՛ Հայաստանի կոմունիստական կուսակցությունը։ Մնաք բարո՛վ, ընկերներ» (Մայիսյան ապստամբությունը Հայաստանում. 1920—1930. Հիշողությունների և դոկումենտների ժողովածու, Երևան, 1930, էջ 136)։ Դաշնակները Նորքի ձորում, Քանաքեռ տանող ճանապարհին, գազանային խոշտանգումների ենթարկելուց հետո գնդակահարում են երեք հերոսներին և իրենց ոճրագործությունը թաքցնելու նպատակով այրում դիակները։

Ալավերդյանի, Ղարիբջանյանի և Մուսայելյանի գնդակահարությունը առաջացնում է Կոմինտերնի գործկոմի, սովետական կառավարության, Անդրկովկասի, Ռուսաստանի մի շարք վայրերի, ինչպես նաև սփյուռքի աշխատավորության բուռն զայրույթն ու բողոքը։

Ամիսներ անց գտնվեցին Ալավերդյանի, Ղարիբջանյանի ու Մուսայելյանի ածխացած ոսկորները և 1921 թ. հունիսի 12-ին կազմակերպվեց հանդիսավոր թաղում։ Նրանց աճյունները ամփոփվեցին մեկ եղբայրական գերեզմանում՝ Երևանի Կոմունարների այգում։

Հայ ժողովուրդը անսահման սիրով ու երախտագիտությամբ է հիշում ու պահպանում ազատագրական պայքարում զոհված հերոսների անմահ հիշատակը։ Բոցաշունչ բոլշևիկ-լենինյանների, այդ թվում Ստեփան Ալավերդյանի կյանքն ու գործունեությունը պայքարի և ոգեշնչման անսպառ աղբյուր է սերունդների, հատկապես երիտասարդության դաստիարակման համար։ Ինչպես նշել է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը, «Անհրաժեշտ է մարդկանց դաստիարակել նրա՛նց օրինակով, ովքեր իրենց կյանքն են տվել հանուն հեղափոխության և սոցիալիզմի»։

Ս. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ
Պատմական գիտությունների
թեկնածու



# ՀԱՂԹԵԼ ԵՐԳԻԾԱՆՔԻ ԶԵՆՔՈՎ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ հեղափոխական նորացման շրջանում մեր պարբերական մամուլի առջև ծառացել է մի խնդիր՝ գործել «ժամացույցն ստուգելով կյանքով»։ Նման պայմաններում առանձնահատուկ հրատապություն է ստանում երգիծանքը՝ հրապարակախոսության ամենաազդու միջոցը։ Այսօր, երբ չի կարելի շրջանցել կյանքի սուր անկյունները, երբ արգելված է համարվում ոչ թե թերությունների մատնանշումը, այլ ընդհակառակն, դրանց մասին լռելը, հարձակողական քննադատությունը փաստական նյութի երգիծական մեկնաբանման միջոցով պետք է ձեռք բերի իրական ուրվագծեր։

Երգիծական հրապարակախոսության պատմության ամենավառ էջերը բաժին են ընկել այն ժամանակահատվածներին, երբ հասարակական վրդովմունքի ու ըմբոստության ալիքը ստացել է շոշափելի թափ, պատմական այն պահերին, երբ լայն զանգվածներին սկսել է տիրել կրիտիկական տրամադրությունը։

Ի դեպ, հայ երգիծական հրապարակախոսության պատմությունը հավաստում է, որ այդպիսի օրինաչափությունը ներհատուկ է եղել նրան՝ նրա առաջացման օրից։ Դրանք են և՛ Միքայել Նալբանդյանի ֆելիետոնները, երգիծական ժանրի առաջնեկները, որոնք լույս են տեսել «Հյուսիսափայլում»՝ անցյալ դարի վաթսունական թվականներին, երբ ավելի սուր էր դարձել լայն ընթերցողին հասարակական ակտիվ գործողություններին մասնակից դարձնելու անհրաժեշտությունը, և՛ «պատժող տողի վարպետներ» Հակոբ Պարոնյանի ու Երվանդ Օտյանի հրապարակախոսությունը։ Հասարակության առաջավոր խավերի «գրգռված զգացմունքի եռանդին» առանձնահատուկ շիկացածություն էր հաղորդում երգիծական այն լիցքը, որը պարունակվում էր Գաբրիել Սունդուկյանի «մասլահաթներում» և Ռափայել Պատկանյանի «մասալներում»։

Հնի դեմ նորի մղած պայքարում երգիծանքի՝ իբրև զենքի պահանջմունքը աճեց առաջին ռուսական հեղափոխության տարիներին։ Այն դրսևորվեց հայ երգիծական պարբերական հրատարակություններում, որոնցից հասարակության դեմոկրատական ձգտումների ամենաուժեղ արտահայտիչն էր «Խաթաբալա» հանդեսը։ Չի կարելի չնշել, որ երգիծանքից հեռու կանգնած չի եղել նաև նախահեղափոխական հայ բոլշևիկյան մամուլը, որը ձգտում էր ծաղրի ու սարկազմի զենքով հարվածել հակառակորդին։

Սովետական երգիծական հրապարակախոսությունը անցյալի առաջադիմական ավանդույթները շարունակեց սկզբունքորեն նոր նյութի վրա, երբ մերկացումը նպատակ ունի ոչ միայն խարխլել սոցիալական սիստեմը, այլ ընդհակառակն, ամրապնդել այն՝ պայքարելով առկա խորթ բարքերի ու սովորությունների դեմ, որոնք ժառանգություն էին մնացել անցյալից։ Ազգային երգիծական հրապարակախոսության պատմությունը ցույց է տալիս, որ երգիծանքի վառ էջերի ամենամեծ քանակը, գրեթե բոլոր էջերը, ընկնում են քսանական թվականներին։ Դրան հակառակ, երեսնական թվականների կեսերից սկսում է բթանալ երգիծանքի սուր ծայրը, որը կոչված էր մատնանշելու շրջապատող իրականության «անբավարարությունը» և նպաստելու հանրայնորեն վնասակար երևույթները արմատախիլ անելուն։ Նախապատերազմյան տարիներին լրագրային երգիծանքը սահմանափակվում էր քաղաքական ծաղրանկարով, միջազգային թեմաներին նվիրված պամֆլետով և ֆելիետոնով։ 1930 թվականին Թիֆլիսում հայերեն «Կարիճ» հանդեսը լույս տեսնելուց հետո գրեթե քառորդ դար երգիծական հրատարակությունները դադարում են։ Այնպես որ հայ սովետական երգիծական հրապարակախոսության «ոսկեդարյան ժամը» քսանական թվականներն են։

Քսանական թվականներին երգիծական հրապարակախոսության գլխավոր գիծը անցյալի վերապրուկներից ազատագրված մարդու համար պայքարն էր։ Այդ գիծը «ձգվել է» մինչև մեր օրերը։ Այսօր, ինչպես նշել է Մ. Ս. Գորբաչովը մասսայական ինֆորմացիայի միջոցների և ստեղծագործական միությունների ղեկավարների հետ ունեցած հանդիպման ժամանակ, «մարդը դուրս է գալիս պայքարի առաջավոր գիծ, նրա միջով է անցնում ողջ վերակառուցումը, նշանակում է, նրա մտածողությունը, նրա դիրքավորումը վճռական նշանակություն կունենա այն բանի համար, թե ինչպես կընթանա վերակառուցումը»։ Այդ կապակցությամբ անցյալի բեռից ազատագրված մարդու դաստիարակությունը դառնում է օրվա կենսական խնդիր, ժա-

մանակակից երգիծական հրապարակախոսության հիմնադրույթը։ Կարծես թե Մ. Գորկին խորհուրդներ էր տալիս ոչ թե քսանական թվականներին «Կրոկոդիլ» հանդեսում երգիծական անդաստանում ակտիվորեն աշխատած Մանուիլսկուն և Աբրամսկուն, այլ երգիծական բնագավառի այժմյան ներկայացուցիչներին. «... Ինձ թվում է, որ դուք պետք է ուշադրությունը ավելի շատ կենտրոնացնեք այն թեմաների վրա, որոնք կապված են սովետական հասարակության նոր բարոյականության հետ, մեր կենցաղի բոլոր այլանդակությունների վրա, գիտակցության մեջ եղած վերապրուկների վրա, որոնք վերացնելն անհամեմատ ավելի դժվար է, քան վերակառուցել էկոնոմիկան։ Այս թեմաները պետք է դառնան ձեր իսկական տարերքը» (И. Абрамский. У «крокодильей» колыбели», Москва, 1965, №5). Այդպիսի պայմաններում առանձնահատուկ նշանակություն է ստանում հաջորդայնությունը քսանական թվականների երգիծական հրապարակախոսության հետ։ Իսկ ինչպիսի՞ն էր 20-ական թվականների հայ երգիծական հրապարակախոսությունը, ինչպիսին էր այն պրոբլեմների դիապազոնը, որոնց դիմում էր նա, ինչպիսի՞ն էին ընթերցողի վրա նրա ներգործության մեթոդները։

Քսանական թվականների հայ երգիծական հրապարակախոսությունը ներկայացված էր «Խաթարալա» (Թիֆլիս, 1922—1926), «Ձունա» (Երևան, 1924), «Կարմիր մոծակ» (Երևան, 1926—1927) երգիծական հանդեսներում, «Կարմիր աքլոր» (Թիֆլիս, 1921) և «Շեչտ» (Երևան, 1923) երգիծական թերթերում, «Անաստված» հանդեսի երգիծական բաժնում, որը 1920—1929 թվականներին եղել է մարտնչող անաստվածների հանրապետական խորհրդի օրգանը։ Եվ վերջապես այն ֆելիետոնները, պամֆլետները, երգիծական բանաստեղծությունները, երգիծաբանական հոդվածները, ծաղրանկարները, էպիգրամները, պարոդիաները, որոնք աշխուժացնում էին լրագրային էջերը։ Երգիծական հրապարակախոսությունը բուռն կերպով ծաղկում էր. չնայած այն ժխտում էին որոշ տեսաբաններ, որոնք անտեսելով երգիծանքի հնկայական հնարավորությունները նոր պայմաններում, այն համարում էին լոկ պետական հիմքերը կործանող միջոց։

Հեղափոխության սկզբից արդեն որոշվել էին նաև սովետական երգիծական հրապարակախոսության կարևորագույն թեմաները։ Առաջնային թեմաներից մեկը պայքարն էր մարդկանց գիտակցության մեջ եղած անցյալի վերապրուկների դեմ։ Հեղափոխությունը, որ կարճ ժամանակամիջոցում խորտակել էր հին բազիսն իր վերնաշենքով, բնականաբար, ի վիճակի չէր իսպառ վերացնելու անցյալի վերապրուկների այն ամբողջ բալաստը, որի աղբյուրն էին մասնավոր սեփականության հետ կապված տնտեսական կացութաձևերը։ Որպեսզի մենք կարողանանք, Ա. Լունաչարսկու արտահայտությամբ, «մաքրել մեզ ժառանգություն մնացած ավգյան ախոռը» (Луначарский А. В. Собр. соч., в 8 т. М., 1964, т. 2, с. 186), պահանջվում էր երկարատև ու քրտնաջան աշխատանք մարդկային գիտակցությունը վերափոխելու համար։ Այդ գործը առանձնապես աշխատատար էր Հայաստանում, որտեղ կենտրոնից հեռու ապրում էր գերազանցապես անգրագետ գյուղացիություն։ Երգիծական հրապարակախոսությունը չէր կարող անցնել նոր սոցիալիստական հասարակության մարդու ձևավորման հարցերի կողքով։ Քսանական թվականների սովետահայ պարբերական մամուլում քաղաքացիության լայն իրավունքներ էր նվաճել այն երգիծանքը, որը մարդկանց դաստիարակում էր նոր ժամանակի ոգով, հաստատում սոցիալիստական բարոյականություն։

Նոր տնտեսական քաղաքականության տարիներին առանձնահատուկ հրատապություն ստացավ քաղքենիական կենցաղի, մասնավոր սեփականատիրական բարոյականության դրսևորումների դեմ մղվող պայքարը։ Այդ գործում բացառիկ դեր պետք է խաղար երգիծական հրապարակախոսությունը։ Լ. Կամսարի, Դ. Դեմիրճյանի, Մ. Դարբինյանի, Է. Խոջիկյանի (Խոչիկ), Ա. Աթանասյանի (Սալ-Ման), Մ. Բագրատունու (Փալանդուզ Մկո) ֆելիետոններում մերկացվում էր նոր կենցաղի մեջ սերտաճած քաղքենին, որն իր մտքերն ու շահերը թաքցրել էր արհեստական դիմակի տակ և սպառողական հոգին հեղափոխական ֆրազով քողարկած հարմարվողականը։ «Կարմիր մոծակ» թերթի համարներից մեկում (1926, № 2, էջ 2) հրապարակված չափածո ֆելիետոնի հեղինակն այդպիսի մարդկանց անվանում էր «բողկ մարդիկ», քանի որ նրանք «դրսից կարմիր են, իսկ ներսից՝ սպիտակ»։ Երգիծաբան Լեռ Կամսարը իր ստեղծագործություններում հաճախափսոսանք էր հայտնում այն առթիվ, որ «մարդկային նյութի» վերափոխումը հանրապետության տնտեսական վերածննդի հետ հավասար չի ընթանում, որ անցյալի անիծյալ ժառանգությանը արագ վերջ տալ անհնար է։ «Շիրկանալի ուղիով» ակնարկում Կամսարը, պատմելով այն մասին, թե ինչպես է ինքը «նախկիններից» մեկի հետ այցելել Շիրկանալ, հեգնանքով գրում էր իր ուղեկցի մասին. «Ընդամենը երկու տարի է ծախսվել այդ վիթխարի լեռնակույտի մեջ անցք բացելու և թունել անցկացնելու համար։ Բայց ես կտայի 5 տարի և վեց միլիոն՝ եթե մի փոքրիկ անցք բացեին այս մարդու քարե գլխում» («Խորհրդային Հայաստան», 1924, օգոստոսի 24)։

Այստեղ տեղին է մի փոքր շեղում կատարել՝ մի ժամանակավոր տեղափոխություն, որի նպատակն է ապացուցել, թե ընդհանուր ինչքան շատ բան կա քսանական թվականների և մեր օրերի երգիծական հրապարակախոսության թեմատիկայում։ Քսանական թվականների երգիծական հրապարակախոսության հարմարվողականը փոքր-ինչ կատարելագործված ձևով դարձել է նաև ներկայիս երգիծական հրապարակախոսության գլխավոր հերոսներից մեկը։ Մեր օրերում նրան անվանում են «վերակառուցման նմանակող», այսինքն, դա այն մարդն է, որի վերաբերմունքը վերակառուցմանը «դանդաղաքայլ է, երկյուղած զիգզագներով, առանց հրապուրվելու, հարմարվելով»։ Երգիծական հրապարակախոսությունը հատկապես շեշտը դնում է նմանակման փաստերի վրա, անիմաստ կադրային հաճախափոխության միջոցով վերակառուցման արտաքին տեսք ստեղծելու վրա։ Այդ բանը ժամանակին և սուր աչքով դիտել է Գ. Սարգսյանը «Ավելը» կարճ առակի մեջ, որտեղ խոսվում է այն մասին, թե ավելը փոքրիկ խորդանոցում ավերածություն է կատարել, աշխատանքից ազատել փոշեծծիչին ու հատակամաքրիչին, և »թող իմանան, թե ինչպես է մաքրում ավելը», (Коммунист, 1987, 7 июня)։ Երգիծաբանների տեսադաշտից չի վրիպել նաև հարմարվողականության այնպիսի տարատեսակը, ինչպիսին է դեմոկրատիա, հրապարակայնություն ճարպկորեն խաղալը։

Քսանական թվականների հայ երգիծական հրապարակախոսությունը զգայուն կերպով որսացել է օրվա այն խնդիրները, որոնք կապված են երիտասարդության բարոյական կերպարի հետ։ Սրությամբ ու անհաշտությամբ աչքի էին ընկնում այն մերկացումները, որոնք ուղղված էին երիտասարդության վրա քաղքենիական ազդեցությունների դեմ, նրա հետամնաց անկայուն մասի բուրժուական վերասերման դեմ՝ «Ալվանգարդ» թերթի «Հանաքներ-ապտակներ», «Փոքրիկ ֆելիետոն», «Կորչի հին կենցաղը» խորագրերի տակ։

Քսանական թվականներին կուսակցության գաղափարախոսական աշխատանքի կարևոր ուղղությունը մարդկանց գիտակցությունը կրոնի վնասակար ազդեցությունից ազատագրելու համար պայքարն էր։ Այդ ժամանակաշրջանի հայ երգիծական հրապարակախոսությունը հակակրոնական պրոպագանդային ունեցած ակտիվ մասնակցության վառ օրինակ է։ Հայ սովետական հրապարակախոսության երգիծական հարվածն ուղղված էր կրոնական նախապաշարմունքների, սնոտիապաշտությունների դեմ, որոնց համար որպես բարեբեր հող էին ծառայում տգիտությունը, միջնադարյան բարբարոսական սովորությունները ու ազգային սահմանափակության այլ դրսևորումներ։

Երգիծական հրապարակախոսությանը առանձին նկատելի «աստվածամարտական» ուղղվածություն էր հաղորդում Լեռ Կամսարը։ Աթեիստական թեման, հատկապես քսանական թվականների առաջին կեսին, առաջատար էր նրա ֆելիետոնային ստեղծագործության մեջ։ 1924 թվականին Երևանում «Հայպետհրատը» լույս ընծայեց մի առանձին գիրք, որի մեջ հավաքված էին հոգևորականության ու եկեղեցու դեմ ուղղված նրա բոլոր ֆելիետոնները։ Վերջիններից մեկի՝ «Անվավեր մեռյալներ» վերնագիրը կրող այդ գրքի մեջ մտած ֆելիետոնների մեծ մասը հրապարակվել էին «Խորհրդային Հայաստան» հանրապետական թերթում։

Լեռ Կամսարի երգիծական խոսքը համոզիչ էր, փաստարկված ու ծանրակշիռ, քանի որ ընթերցողին էր դիմում ոչ թե պարզապես իր համոզմունքներով աթեիստ գրողը, այլ մի մարդ, որը եղել է, ինչպես ասում են, թշնամու կռատանը։ Նա եղել է հոգևորականի զավակ, կրթությունն ստացել է հոգևոր ճեմարանում։ Բայց ստացվել էր այնպես, որ կրոնական տերմինաբանության, դավանաբանության և պաշտամունքի առանձնահատկությունների, բիբլիական կերպարների ու խորհրդանշանների ուսումնասիրումը օգտակար եղավ ոչ թե ապագա հոգևոր դաստիարակի, այլ ֆելիետոնիստի համար։ Ջավեշտորեն մեկնաբանելով բիբլիական սյուժեները, սուր հեգնանքով ներկայացնելով կրոնական դոգմաները, Կամսարը ընթերցողին ստիպում էր այլ աչքերով նայել այն ամենին, ինչին նա կուրորեն երկրպագում էր, և համոզվել, որ աստվածն ու բիբլիական մյուս անձինք ընդամենը միայն կրոնական երևակայության պտուղ են։

«Ծիծաղից ընկնում են կուռքերը,— գրել է Ա. Գերցենը,— ընկնում են պսակներն ու սրբապատկերների դրվագները, և հրաշագործ սրբապատկերը դառնում է սևացած ու վատ նկարված պատկեր» (А. И. Герцен. Собр. соч., в 30 т. М., 1958, т. 14, с. 117)։ Այդպիսի «վերափոխիչ» հատկություններ ուներ նաև Լ. Կամսարի ծիծաղը։

«Խորամանկ աստծու» կողքով լռությամբ չէր անցնում նաև հանրապետական գյուղացիական «Մաճկալ» թերթը։ Ժողովրդին կեղեքող պաշտամունքի սպասավորների մերկացման գործում, սնոտիապաշտությունների ու նախապաշարմունքների դեմ մղվող պայքարում «Մաճկալը» նախապատվությունը տալիս էր երգիծական հոդվածին, փոքրիկ ֆելիետոնին, չափածո ֆելիետոնին, որոնց հիմքում ընկած էր լինում կոնկրետ փաստ՝ սովորաբար բանգյուղթղթակցային ահազանգը։ Երգիծական վերամշակման էին ենթարկվում այս կարգի փաստերը. գյուղերից մեկի կանայք, որպեսզի ստիպեն երկնքին մի կաթիլ արցունք թափել, սկսել էին «արորով հերկել» գետը. մեկ այլ գյուղի բնակիչներ աստծուն «սիրաշահում էին» զոհաբերություններով. ագիտաշխատանքի համար գյուղ ուղարկված դասախոսները առաջին հերթին գնում էին հրաշագործի մոտ։ Երգիծական հոդվածները «Մաճ-

կալում» տպագրվում էին «Գյուղի հիվանդություններից», «Հանաքներ-դանակներ», «Մաճկալի» մտրակի տակ» խորագրերով, որոնք թերթում լույս էին տեսել 1926—1928 թվականներին։ «Մաճկալ» թերթում «երգիծական եղանակ» էր ստեղծում Ա. Խնկոյանը (Խնկո-Ապեր)։ Խեչո բիձայի և քեռի Պողոսի դիմակների տակ «թաքնված» գրողը երգիծաբանական մեկնություններ էր տալիս գյուղթղթակցական նյութերին, օգտագործելով պատկերավոր խոսքը, դիպուկ առածը, սուր խոսքը։ Թե որքան անսպառ էր Խնկո-Ապոր հնարամտությունը փաստական նյութի մատուցման բազմապիսի ձևեր հորինելու գործում, կարելի է դատել նրա հրապարակումների վերնագրերից. «Քեռի Պողոսի խուրջինից», «Խեչո բիձան Թալինում», «Խեչո բիձայի և քեռի Պողոսի հատուկ պլենումը», «Խեչո բիձայի նամակը քեռի Պողոսին»։ Լենինականի «Բանվոր» թերթի տարբերիչ առանձնահատկությունը ևս եղել է այն, որ նա իր երգիծական ելույթներում հետևում էր կոնկրետ փաստին։

Աշխատավորներին կրոնական թմբիրից, դարերով ժողովրդի մեջ արմատավորված նախապաշարմունքների ու սնոտիապաշտությունների ծանր բեռից ազատագրելու խնդրին էր ենթարկված նաև «Անաստված» հանդեսի ողջ բովանդակությունը։ Գիտաաթեիստական հրապարակախոսությունը, որը մերկացնում էր կրոնի դասակարգային էությունը, ընթերցողներին զինում բնագիտական գիտելիքներով, հանդեսում զուգակցվում էր երգիծական հրապարակախոսության հետ։ «Անաստվածի պարկից», «Պայքար կրոնի դեմ» խորագրերը կրող բաժիններում կրակի տակ էին առնվում կրոնական տոները, զանազան հավատալիքներն ու նախապաշարմունքները։ Հրապարակվում էին եկեղեցականների մեքենայությունները մերկացնող երգիծական շատ նյութեր։

Հայկական ֆոլկլորում վաղուց գոյություն են ունեցել հակակրոնական մոտիվներ ու սյուժեներ։ Առածներում, ասացվածքներում, հեքիաթներում ու անեկդոտներում ծաղրի էին ենթարկվում տերտերներն ու վանականները։ Հանդեսի էջերում օգտագործվել էր ոչ միայն ժողովրդական ստեղծագործության այդ ամբողջ առատ նյութը, այլև տեղի էր ունենում հին ֆոլկլորային ձևերի «հագեցում» նոր բովանդակությամբ։ Հեղինակների ճնշող մեծամասնությունը ժողովրդական երգերի պարոդիական օգտագործումը գերադասում էին հակակրոնական պրոպագանդայում։ Հակակրոնական երգիծական այն երգերը, որոնք ստեղծվել էին ժողովրդական այնպիսի երգերի հիման վրա, ինչպիսիք են «Երևան բաղ եմ արել», «Ենթի աշխարհ մեկտի կերթանք», «Տանում են յաղե ջան» և այլն, դարձել են հեղափոխությունից ծնված աթեիստական երգիծանքի նոր ձև։

Երգիծանքի առարկա դարձնելով մարդկանց գիտակցության մեջ մնացած անցյալի վերապրուկները, 20-ական թվականների սովետահայ հրապարակախոսությունը աչքաթող չէր անում կանանց ազատագրության, նրանց իրավունքների վերականգնման հարցերը, ընտանիքը կնոջ ստրկացման օջախից ամուսինների իրավահավասար դաշինք դարձնելու հարցը։ «Ավանգարդ», «Մաճկալ» թերթերը կամպանիա էին ծավալում աղջիկների առևանգման դեմ, անչափահաս աղջիկներին բռնի ամուսնացնելու և հնացած այլ ադաթների դեմ։ «Մաճկալ» թերթում «Հանաքներ-դանակներ» խորագրի տակ իր երգիծական հոդվածներից մեկում հեղինակը գրում էր. «Հին ժամանակներում ասում էին. «փափախով խփիր աղջկանդ, եթե նա չընկնի, ուրեմն, մարդու տալու ժամանակն է»։ Հիմա, ճիշտ է, փափախ չկա, բայց ահա շատ գյուղացիների գիտակցությունը մնացել է նույն մակարդակին» («Մաճկալ», 1929, սեպտեմբերի 11)։

Անհրաժեշտ է նշել, որ մարդկանց գիտակցության մեջ անցյալի վերապրուկների դեմ պայքարը հայ պարբերական մամուլում մղվում էր բուրժուազգայնական վտարանդիության մամուլի ճամարտակության ուղեկցությամբ, որը, իբր, «պաշտպանում էր» հայկական ավանդույթները և ազգը պահպանում «կոմունիստական աղտեղությունից»։ Դաշնակցական թերթերն այդպես զբաղվում էին հասկացությունների նենգափոխմամբ և խեղաթյուրում նոր մարդու դաստիարակության համար Հայաստանում տարվող գաղափարախոսական աշխատանքի իմաստը։ Կային իսկական ժողովրդական ավանդույթներ, որոնցում բացահայտվել էին ազգային գիտակցության լավագույն կողմերը, որոնց պահպանման համար պայքարում էր սովետահայ մամուլը։ Բայց այն ամենը, ինչ «Ասպարեզը» ու նրա նման մյուս թերթերը անվանում էին «ժողովրդական ավանդույթներ», այլ բան չէր, քան ժողովրդի կյանքի առավել հոռի, պակասավոր կողմերը։ Հենց այդպիսի «ավանդույթների» դեմ էլ հանդես էր գալիս, առաջին հերթին, քսանական թվականների հայ երգիծական հրապարակախոսությունը։

Իհարկե, թերթելով այդ ժամանակաշրջանի լրագրերն ու հանդեսները, այսօրվա ընթերցողը, որ վարժված է «լրագրա-հանդեսային տարածքի» փոքր ինչ այլ տեսքի, անհասկանալի և նույնիսկ տարօրինակ շատ բաներ կգտնի։ Բայց այդ ամենին պետք է վերաբերվել այն ըմբռնումով, որ կուսակցական-սովետական մամուլի դրությունն այն տարիներին դեռ բարդ էր, նա որոնում էր իրեն հատուկ ոճը։ Այս բոլոր թերությունները, սակայն, չպետք է իրենցով սքողեն այն ամենը, ինչ արժանի է ուսումնասիրման, ստեղծագործական վերաիմաստավորման ու շարունակման։ Քսանական թվականների երգիծական հրապարակախոսության փորձին դիմելն արդի երգիծանքի համար ամենից առաջ հարկավոր է «դաս քաղելու» առումով։

«Ոզնի» հանդեսը 1954 թվականի մարտից սովետահայ երգիծական հրապարակախոսության, եթե ոչ ամբողջ երգիծանքի, «այցետոմսն» է։ Իր գոյության ընթացքում հանդեսը, իհարկե, կատարել է որոշակի «սանիտարական» աշխատանք, նրա ծաղրը հաճախ եղել է հավատարիմ դաշնակից «չարիքի կոնկրետ կրողների» դեմ մղվող պայքարում։ Չի կարելի չնշել, որ «Ոզնին» դարձել է հայկական ժողովրդական ֆոլկլորային անեկդոտի հավաքման, տարածման ու զարգացման մի յուրահատուկ կենտրոն։ Քսանական թվականներին երգիծաբանները հաճախ էին դիմում «կատակին» ու «հանաքին», որպեսզի կանգնեին ժողովրդի գեղարվեստական մտածողության մակարդակին, իրենց ստեղծագործությունները պարզ ու մատչելի դարձնեին բանվորագյուղացիական ընթերցող լայն զանգվածներին։ Իսկ այժմ ժողովրդի հոգեբանական խառնվածքի, ժողովրդական հումորի բնորոշ գիծը հանդիսացող կենդանի առօրյա սրամտության «հանձնումը թղթին» ազգային գունավորում է հաղորդում հանդեսին, առանձնահատուկ ձգողական ուժ տալիս նրան։ Ժողովրդական հումորը հստակորեն տարբերակելով «Լոռվա, Լենինականի ու Երևանյան տարատեսակների», որոնցում կարող է կողմնորոշվել միայն հայ ընթերցողը, հանդեսը կարծես իր համաձայնությունն է հայտնում Անդրեյ Բիտովի հետ, որը «Հայաստանի դասերում» պնդում է, որ «ծիծաղել կարելի է միայն մայրենի լեզվով»։ Չի կարելի անուշադրության մատնել նաև այն փաստը, որ «Ոզնին» իրականացրել և իրականացնում է թարգմանչական հսկայական աշխատանք, որը ծիծաղը հանդեսի էջերում դարձնում է ազգամիջյան, միջազգային և ապացուցում, որ հումորի ու երգիծանքի լեզուն այնուհանդերձ թարգմանելի է։

Երգիծաբանի ներկայիս վիճակը լավ է արտահայտել Մ. Ժվանեցկին. «Կյանքը հեշտացել է, թու, թու, թու։ Բայց ավա՜ղ, բարձրորակ ֆելիետոնը, երգիծանքի ամենաարագաշարժ զենքը, թերթերի էջերում ինչպես եղել է հազվագյուտ հյուր, այդպես էլ մնում է։ Որտե՞ղ են այն ֆելիետոնիստները, որոնց կարելի լիներ ասել նույն բանը, ինչ քսանական թվականներին Լուկաշինն ասել է Լեո Կամսարին, երբ վերջինս խմբագրական բախումների պատճառով ցանկացել էր հեռանալ «Խորհրդային Հայաստան» թերթից. «Դուք իրավունք չունեք ոչինչ անելու, բացի այն բանից, որ ֆելիետոններ գրեք»։ Այսօրվա թերթերում «ֆելիետոն» խորագրով հրապարակվող որոշ հեղինակների համար այդ բառերը կարելի կլիներ ձևափոխել հետևյալ կերպ. «Արեք ամեն ինչ, միայն ֆելիետոններ չգրեք»։ Մեր լրագրական պրակտիկայում գոյություն ունի, կարելի է նույնիսկ ասել՝ ծաղկում է ֆելիետոնների ստեղծման շատ «պարզունակ մեխանիկա». վերցվում է փաստը, դրա համար հորինվում են մեկ-երկու ֆելիետոնային «զարդեր» կամ երկու-երեք ծիծաղելի արտահայտություն, այսինքն, ստեղծվում է ինչ-որ մի «աշխուժացում», որպեսզի ստացվի ոչ թե բացասական երևույթի անամոթ-մերկ արձանագրում և, խնդրեմ, խմբագրությունը չեն կշտամբի երգիծական ժանրի նկատմամբ ունեցած անտարբերության համար։ Կա այսպիսի մի «մեխանիկա» ևս՝ գրում են ամեն ինչի մասին, բայց որպեսզի ժանրային մաքրության նախաձախնդիրների կողմից կշտամբանքի խոսքեր չլինեն, այդ «ինչ-որ բանը» զետեղվում է «Երգիծական գրչով», «Սուր ահազանգ», «Ռեպլիկ» ամենակեր խորագրերի տակ։

Քսանական թվականների հայ երգիծական հրապարակախոսությունը հասարակական-կենցաղային երևույթների տարողունակ քաղաքական գնահատականն է՝ սոցիալական վառ սրվածություն, ուշադրության կենտրոնացում առավել էական պրոբլեմների վրա, նոր մարդու դաստիարակության հետ կապված խնդիրների լայն շրջան, բազմապիսի ժանրային համերանգություն, զավեշտականի եղանակների ճկունություն ու բազմապիսություն, դրանց նպատակամղվածությունը երգիծական ուժեղ ժանրի ստեղծմանը, օպերատիվ արձագանք օրվա խնդիրներին։ Քսանական թվականների երգիծանքի այս հարուստ ավանդույթների հիմքի վրա է խարսխվում մեր օրերի սովետահայ երգիծանքը։

Ի. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՌԱԶՄԱՇԵՖԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Ռ. ԲԱԽՇՅԱՆ

ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ քաղաքացիական և զինվորական կազմակերպությունների շեֆական կապերը ծնունդ են առել կարմիր բանակի ու կարմիր նավատորմի ստեղծման հետ միասին և լայնորեն տարածվել են սոցիալիստական հասարակության ու նրա զինված ուժերի շինարարության բոլոր փուլերում, ամուր հիմքերի վրա դրել ժողովրդի ու բանակի հարաբերությունները: Մի կողմից, այստեղ հանդես է գալիս սովետական կազմակերպությունների, հիմնարկությունների նյութատեխնիկական և կուլտուրական սիստեմատիկ ընկերական օգնությունը զորամասերին ու նավերին, մյուս կողմից՝ զինվորական կոլեկտիվների օգնությունը քաղաքացիական կազմակերպություններին պաշտպանական-մասսայական աշխատանքներն իրականացնելու գործում:

Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն բազմիցս նշել են բանակի և ժողովրդի միասնությունը ամրապնդելու, աշխատավորական կոլեկտիվների հետ բանակի կապերն ամրապնդելու, աշխատավորների, հատկապես երիտասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի մեջ հրամանատարներին, քաղաշխատողներին, բանակային կոմունիստներին և կոմերիտականներին ներգրավելու անհրաժեշտությունը: Վ. Ի. Լենինը նշում էր,որ բանվորների և գյուղացիների նոր բանակի առանձնահատկությունն այն է, որ նա կտրված չէ ժողովրդից, չպետք է վարի մեկուսացված ինքնապարփակ ապրելակերպ, զորանոցի և գործարանի զինվորական բջջի և համակուսակցական կազմակերպությունների միջև պետք է լինի անքակտելի կապ: «Հարկավոր է զորանոցը սերտորեն մոտեցնել գործարանին ու փաբրիկային...,— ասվում էր ՌԿ(բ)Կ Կենտկոմի 1921 թվականի հունվարի 12-ի շրջաբերական նամակում,— զորանոցը չի կարող, չպետք է վարի մեկուսի, ինքնամփոփ ապրելակերպ: Զորանոցի ու գործարանի և զինվորական բջջի խորհրդի ու համակուսակցական կազմակերպության միջև պետք է լինի անխզելի կապ» (КПСС о Вооруженных Силах СССР, М., Воениздат. 1969, с. 149):

Համառուսաստանյան Կենտգործկոմի որոշումով օրինականացվեց տեղական սովետների և կարմիր բանակի շեֆությունը: 1922 թ. նոյեմբերի 12-ին Համառուսաստանյան Կենտգործկոմը հաստատեց «Կանոնադրություն կարմիր շեֆության մասին» փաստաթուղթը: Նույն թվականին սահմանվեց կոմերիտմիության շեֆությունը ռազմածովային նավատորմի նկատմամբ: 1931 թ. հունվարին կոմերիտմիությունն ստանձնեց ռազմաօդային նավատորմի, իսկ 1970 թվականի մայիսին՝ սահմանապահ զորքերի շեֆությունը:

Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին բանակի ու ժողովրդի շեֆական կապերը ձեռք բերեցին խսկական մասսայական բնույթ, իսկ պատերազմի տարիներին դարձան ռազմաճակատին օգնություն ցույց տալու համաժողովրդական հայրենասիրական շարժման հիմնական ձևերից մեկը: Ռազմաշեֆական աշխատանքը արտահայտվում է միավորումների, զորամասերի, նավերի, զինվորական հոսպիտալների, այլ հիմնարկությունների ու կազմակերպությունների նկատմամբ հանրապետությունների, քաղաքների ու շրջանների շեֆության մեջ: Մ. Ի. Կալինինը շեֆությունն անվանել է բանակի հետ ժողովրդի հասարակական կապի ձև:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում Հայկական ՍՍՀ-ն շեֆություն էր անում հինգ դիվիզիաների և ուրիշ շատ զորամասերի նկատմամբ: Ձեռնարկությունների և ուսումնական հաստատությունների մոտ 270 կոլեկտիվներ ստանձնել էին հանրապետության տերիտորիայում տեղավորված հոսպիտալների շեֆությունը: Պատերազմական տարիներին ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում շեֆական կապը արտահայտվում էր աշխատավորների պատվիրակությունների և ստեղծագործական կոլեկտիվների դեպի ռազմաճակատ կատարած ուղևորությունների, մարտիկներին նամակներ ու ծանրոցներ ուղարկելու, ճակատայինների համար իրեր հավաքելու, էվակուացված ընտանիքներին օգնություն ցույց տալու և այլ միջոցառումների մեջ:

Ճիշտ է ասում ժողովուրդը, որ զինվորներ ու հայրենասերներ չեն ծնվում, այլ դառնում են: Ա. Մ. Գորկին ասում էր, որ կյանքում միշտ տեղ կա սխրագործության համար: Բայց սխրագործություն կատարելու համար հարկավոր է պատրաստ լինել դրան: Այդ պատրաստակամությունը ձևավորվում է կոմունիստական դաստիարակության պրոցեսում: Իսկ ռազմահայրենասիրական դաստիարակությունը երիտասարդության կոմունիստական դաստիարակության բաղկացուցիչ և անկապտելի մասն է: Կուսակցության ծրագրում նշված է. «Գաղափարադաստիարակչական աշխատանքի կարևոր խնդիրը մնում է ռազմահայրենասիրական դաստիարակությունը, սոցիալիստական հայրենիքը պաշտպանելու, իր բոլոր ուժերը և, եթե պահանջվի, նաև կյանքը նրան նվիրաբերելու պատրաստակամության ձևավորումը» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 231):

Հայ ժողովուրդը ՍՍՀՄ մյուս ժողովուրդների հետ միասին հերոսաբար մարտնչում էր գերմանաֆաշիստական զավթիչների դեմ: Հարյուրից ավելի հայ մարտիկներ արժանացել են Սովետական Միության հերոսի կոչման: Ռազմաճակատում կատարած սխրագործությունների համար մոտ 70 հազար մարդ և թիկունքում կատարած անձնվեր աշխատանքի համար ավելի քան 380 հազար մարդ պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով: Հայաստանի աշխատավորների միջոցներով ստեղծվել էին «Սասունցի Դավիթ» տանկային շարասյունը, ինքնաթիռների էսկադրիլիաներ, հայ մարտիկները գործում էին Ս. Ա. Կովպակի պարտիզանական միավորման կազմում, Մ. Ի. Նաումովի պարտիզանական հեծելազորային բրիգադում, մասնակցում էին Դիմադրության շարժմանը Ֆրանսիայում և Իտալիայում: Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում առաջ քաշվեցին տաղանդավոր հրամանատարներ: Նրանց թվում էին Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանը, ՍՍՀՄ նավատորմի ծովակալ Ի. Իսակովը, զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ Հ. Բաբաջանյանը, ավիացիայի մարշալ Ա. Խանփերյանցը:

Հայրենական մեծ պատերազմից հետո ռազմաշեֆական աշխատանքը հետագա զարգացում ապրեց: Իրագործման ամենաբազմազան ձևերով ու մեթոդներով այն հայրենասիրական ավանդույթ դարձավ ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում ծառայելու համար երիտասարդությանը նախապատրաստելու գործում: Այսօր դրա նպատակն է երիտասարդությանը ճիշտ պատկերացում տալ մարտական աշխատանքի դերի ու նշանակության մասին՝ որպես հասարակության հեղափոխական վերափոխման, ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող պայքարում կատարվող համաժողովրդական աշխատանքի բաղկացուցիչ ու անկապտելի մասի:

Կուսակցությունն ու կառավարությունը կուսակցական կազմակերպություններից ու սովետական մարմիններից պահանջում են լայնորեն պրոպագանդել զինվորական մասնագիտության նշանակությունն ու առանձնահատկությունները, բարելավել ռազմաշեֆական աշխատանքը, ամրապնդել ուսումնական հաստատությունների և աշխատանքային կոլեկտիվների կապը զորամասերի հետ:

Արթիկի շրջանի կուսակցական և սովետական կազմակերպությունները, հաշվի առնելով առաջադրված պահանջները, շարունակում են ավագ սերնդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային փառավոր ավանդույթները, ակտիվորեն պաշտպանում են հասարակական կազմակերպությունների նախաձեռնությունը երիտասարդության ինտերնացիոնալ, ռազմահայրենասիրական դաստիարակության ուժեղացման, զորամասերի, ստորաբաժանումների ու զինվորական հիմնարկությունների հետ կապերի ամրապնդման համար բազմազան միջոցառումների նախապատրաստման և իրականացման գործում: Շեֆական կապերը կուսակցական, սովետական, կոմերիտական և մյուս կազմակերպություններին օգնում են՝ երիտասարդությանը լավագույնս նախապատրաստելու ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում նախազինակոչային ծառայությանը, նրա մեջ դաստիարակելու հպարտության զգացում սոցիալիստական մեծ հայրենիքի, իր ժողովրդի և նրա նվաճումների, ժամանակակից պայմաններում նրա կատարած հեղափոխական մեծ վերափոխումների համար:

Շեֆական կապերի ամրապնդմանը և ՍՍՀՄ զինված ուժերի ծառայության համար երիտասարդության նախապատրաստմանը

ԲԱԽՇՅԱՆ ՌՈՒԲԵՆ ԹԵՎԱԹՈՐՈՍԻ— ՀԿԿ Արթիկի շրջկոմի բյուրոյի անդամ:

մեծ ուշադրություն է նվիրում Հայաստանի կոմկուսի Արթիկի շրջկոմը: Նա կոորդինացնում է կուսակցական և սովետական բոլոր մարմինների, հասարակական կազմակերպությունների ջանքերը, կուսկազմակերպությունների միջոցով ղեկավարում ժողկրթության մարմինների, ԼԿԵՄ, ԴՕՍԱԱՖ-ի կոմիտեների, սպորտային կազմակերպությունների, շրջանային «Լենինագործ» թերթի խմբագրության, «Գիտելիք» ընկերության, հասարակական սկզբունքով ստեղծված տարբեր խորհուրդների ռազմաշեֆական աշխատանքը: Շրջկոմը կոմպլեքսային կարգով վերլուծում է այդ աշխատանքի վիճակը, ուժեղացնում վերահսկողությունը:

Շրջանի կուսակցական-տնտեսական ակտիվի 1986 թ. հուլիսին կայացած ժողովը քննարկեց երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության և զինված ուժերում ծառայության նախապատրաստության վիճակը ՍՄԿԿ և սովետական կառավարության արդի պահանջների լույսով, բացահայտեց այդ գործում եղած թերությունները ու բացթողումները, նշեց դրանց վերացման ուղիները: Զեկուցման մեջ և ժողովի մասնակիցների ելույթներում առանձնահատուկ տեղ էր հատկացվել կուսակցական ղեկավարման ոճի կատարելագործմանը, բոլոր շահագրգռված կազմակերպությունների ջանքերի մոբիլիզացմանը ռազմահայրենասիրական և պաշտպանական-մասսայական աշխատանքի ակտիվացման համար: Խնդիր դրվեց հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության, այդ թվում՝ նախնական ռազմական պատրաստության նպատակով արդյունավետորեն օգտագործել ուսումնանյութական բազայի, ճակատայինների և պահեստի երիտասարդ զինվորների փորձի լայն հնարավորությունները:

Ռազմա-շեֆական կապերն ակտիվանում են հատկապես նշանավոր տարեթվերի և հոբելյանների առթիվ: Հայրենական մեծ պատերազմի հաղթանակի 40-ամյակին, Մեծ հոկտեմբերի և ՍՍՀՄ զինված ուժերի 70-ամյակին նախապատրաստվելու ժամանակամիջոցում կուսակցական կազմակերպությունները ծավալեցին ռազմաշեֆական ակտիվ աշխատանք: Պատերազմի ու աշխատանքի վետերանների, շրջանի ղեկավարների, արտադրության առաջավորների, մրցության հաղթողների հետ երիտասարդության և զինվորների կանոնավոր հանդիպումները նպաստում են կոմունիստական դաստիարակության ռազմահայրենասիրական ուղղվածության ուժեղացմանը:

Միաժամանակ պետք է խոստովանել, որ «կարմիր», տարեթվերի միջև ընկած ժամանակամիջոցում ռազմահայրենասիրական աշխատանքի անցկացման և ռազմաշեֆական կապերի զարգացման ակտիվությունը նվազում է, թեև հայրենասիրական վեհ զգացումների ձևավորման պրոցեսը պետք է անընդհատ, սիստեմատիկ բնույթ կրի: Այդ կապակցությամբ կուսակցական կազմակերպությունների առջև ծառանում են ղեկավարման ոճի կատարելագործման նոր խնդիրներ, նոր մոտեցումներ:

Մոտավորապես 46 հազար բնակիչ ունեցող Արթիկի շրջանում կա Հայրենական մեծ պատերազմի ավելի քան 700 մասնակից, որոնց մեծամասնության կրծքերին հայրենիքի մարտական շքանշաններ ու մեդալներ են: Ճակատամարտերում քաջի մահով զոհվել է մոտ 2.000 մարդ: ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են 350 արտադրության առաջավորներ, 64 ինտերնացիոնալիստ մարտիկներ: Զինված ուժերի շարքերում այսօր ծառայություն են անցնում նաև արթիկցի կոմերիտականներ ու երիտասարդներ: Վերջին երեք տարում զորամասերի հրամանատարությունից ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարների հասցեներով ստացվել է ավելի քան 230 շնորհակալական նամակ, որոնցից շատերը հրապարակվել են «Լենինագործ» թերթի էջերում:

Տարեցտարի ամրապնդվում, կատարելագործվում և ընդլայնվում է ռազմաշեֆական կապերի ուսումնանյութական բազան, ավելի բազմազան են դառնում ռազմահայրենասիրական աշխատանքի ձևերն ու մեթոդները: Շրջանի 23 բնակավայրերից 14-ում աշխատավորների միջոցներով և իշխանության տեղական մարմինների, տնտեսական ղեկավարների օգնությամբ կառուցվել են հուշարձաններ: Ու թեև պատերազմից հետո 43 տարի է անցել, զոհվածների հիշատակը սրբորեն պահպանվում է ժողովրդի սրտում: Այս տարի հաղթանակի օրվա պատվին հանդիսավոր պայմաններում հուշարձաններ բացվեցին Հովտաշեն և Սարատակ գյուղերում: Հովտաշենը ընդամենը 60 տնտեսություն ունի: Այստեղից ռազմաճակատ է մեկնել 74 մարդ, քաջի մահով զոհվել է 29-ը: Սարատակցի 200 զինվորներից 91-ը չի վերադարձել պատերազմից:

Նախազորակոչային տարիքի երիտասարդությանը իսկական զինվորական ծառայության նախապատրաստելու նպատակով կուսակցությունը պահանջում է բարելավել ռազմաշեֆական աշխատանքը, ընդլայնել ու ամրապնդել դպրոցների, միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունների և աշխատավորական կոլեկտիվների կապերը զորամասերի հետ, անցկացնել պատանիների հանդիսավոր ճանապարհում իսկական զինվորական ծառայության և նրանց դիմավորումներ պահեստ զորացրվելիս: Ուսումնական հաստատությունների նկատմամբ շեֆություն անող ձեռնարկություններն ու կազմակերպությունները պարտավոր են նրանց օգնություն ցույց տալ նախնական ռազմական և ֆիզիկական պատրաստության սարքավորումների և ուսումնական բազայի կատարելագործման բնագավառում:

Կուսշրջկոմի բյուրոյի նիստերում 1986—1988 թթ. երեք անգամ քննարկվել է քաղաքի և շրջանի երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության հետ կապված հարց: Ապրիլին, օրինակ, ռազմաշեֆական կապերի, մատաղ սերնդի, նախազորակոչային և զորակոչային տարիքի երիտասարդության ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակության հետագա բարելավման նպատակով շրջկոմի բյուրոն ճշտել և հաստատել է միմյանց հետ շեֆություն անող ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների, ուսումնական հաստատությունների, զորամասերի, ստորաբաժանումների և հիմնարկների ցուցակը: Լենինյան Ղարաբաղի և նրա շուրջը տիրող իրադարձությունների կապակցությամբ կազմվել և իրագործվում է շրջկոմի միջոցառումների պլանը աշխատավորության ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակության ուժեղացման վերաբերյալ: Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում երիտասարդության դաստիարակության պրոբլեմին:

Դպրոցների, զորամասերի և մանկապարտեզների հետ «Արթիկտուֆ» արտադրամիավորման ավանդական ռազմաշեֆական սերտ կապերը նպաստում են ռազմահայրենասիրական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը: Միավորումում կա կուսակցության, պատերազմի և աշխատանքի ավելի քան 140 վետերան, որոնցից 128-ին շնորհվել են կառավարական պարգևներ: Համընդհանուր հարգանք և հեղինակություն են վայելում միավորման վետերանների խորհրդի նախագահ Թ. Սանոյանը, Վ. Պետոյանը, Գ. Մելքոնյանը, Վ. Նազարյանը, Ս. Բիչախչյանը, Ա. Ավագյանը և շատ ուրիշներ:

Ավագ սերնդի ավանդույթները բազմապատկվում են: Այստեղ հարվածայնորեն են աշխատում Աշխատանքային փառքի երեք շքանշանների լրիվ ասպետ, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Ռ. Սարգըսյանը, Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների ասպետ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անդամ Ա. Հակոբյանը, Աշխատանքային փառքի 3-րդ աստիճանի շքանշանակիր, Հայաստանի կոմերիտմիության մրցանակի դափնեկիր Ս. Մկրտչյանը և հնգամյակի երիտասարդ այլ հարվածայիններ: Կանոնավոր հանդիպումները ցերեկույթներում և երեկույթներում, զրույցներն ու ելույթները սովորողների և զինծառայողների առջև ձևավորում են հայրենասիրական զգացումներ, լավատեսություն, ոգեշնչում են երիտասարդությանն ու զինվորներին զինվորական ու քաղաքացիական պարտքի օրինակելի կատարման:

Միավորման ենթաշեֆ № 2 միջնակարգ դպրոցը մշտական ուշադրություն է նվիրում ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությանը, շատ ցուցանիշներով հետ չի մնում № 3 միջնակարգ դպրոցից: Դրանում մեծ վաստակ ունեն դպրոցի մանկավարժական խորհուրդը, կուսկազմակերպությունը: Դպրոցի բոլոր աշակերտները ազատորեն տիրապետում են ռուսաց լեզվին: Այստեղ նախնական զինվորական պատրաստության պարապմունքները, ռազմահայրենասիրական և պաշտպանական մասսայական միջոցառումներն անցկացվում են ռուսերեն, հաջողությամբ են անցնում ռազմականացված մըրցումներն ու էստաֆետները, զինվորական երգերի, գեղարվեստական ինքնագործունեության համերգների ստուգատեսները և այլն:

Շեֆական կապերի և ռազմահայրենասիրական դաստիարակության դրական փորձ է կուտակված շատ գյուղերում: Օրինակ, Փանիկը 1920 թ. Մայիսյան ապստամբության կենտրոններից է: Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում քաջի մահով ընկավ նրա 159 բնակիչ և նրանց պատվին հուշարձան է կանգնեցվել գյուղի կենտրոնում: Ամեն տարի սեպտեմբերի 1-ին դպրոցում խաղաղության դասը վարում են պատերազմի և աշխատանքի վետերանները: Դպրոցի պիոներները պատմության ուսուցիչ Պ. Նահապետյանի ղեկավարությամբ հարուստ նյութ են հավաքել պատերազմի մասնակից համագյուղացիների կյանքի ու մարտական սխրանքների մասին, ցուցադրել այն պատմահայրենասիրական թանգարանում՝ դրանով իսկ հավերժացնելով նրանց հիշատակը: 1969 թ. դպրոցում ստեղծվել է հացի թանգարան՝ մանկավարժական խորհրդի աշխատանքի արդյունքը, մի կոլեկտիվ,

որին ղեկավարում է Հայրենական մեծ պատերազմի մասնակից Մ. Ղալթախչյանը: Դպրոցի շեֆական կապերը զորամասերի հետ մշտապես ամրապնդվում են և դրական արդյունքներ տալիս, ձևավորվում են բարոյական առողջ հարաբերություններ: Օրինակ, ռազմահայրենասիրական դաստիարակության ուսումնանյութական բազան կատարելագործվում է նախ և առաջ շեֆական կապերի շնորհիվ: Բացի վերը հիշատակված թանգարաններից և նախնական զինվորական պատրաստության դասարանից, այն ներառնում է մարզադաշտը, լողավազանը, հրաձգարանը, ավտոդպրոցը: Դպրոցի շրջանավարտները ազատորեն տիրապետում են ռուսաց լեզվին: Ամեն տարի շրջանավարտներից ընդունվում են բարձրագույն ուսումնական հաստատություններ: Շրջանի կուսակցական կազմակերպությունները ձգտում են, որ յուրաքանչյուր զորակոչիկ ազատորեն տիրապետի ռուսաց լեզվին:

Սովետական զինված ուժերի բազմազգ բնույթը, նրան աճած ռազմատեխնիկական հնարավորությունները և դրա հետ կապված զինվորական ծառայության բարդացումը նախազորակոչային տարիքի երիտասարդներից պահանջում են ռուսաց լեզվի իմացություն: Առանձին ստորաբաժանումներում համատեղ ծառայություն են անցնում 8—12 ազգությունների ներկայացուցիչներ: Այդ պայմաններում ռազմական բարդ տեխնիկայի և զենքի յուրացումը, բարձր կազմակերպվածության և ճշտակատարության, հրամաններն ու կարգադրությունները կատարելու պատրաստականության հասնելը պայմանավորված է ռուսաց լեզվի իմացությամբ: Դժբախտաբար, մեր ժամանակներում հրամանատարներն ու պետերը հաճախ են ստիպված լինում կազմակերպել ռուսերենի ուսումնասիրման խմբակներ, ինչը կասեցնում է զորամասերի ու ստորաբաժանումների մարտական պատրաստության բարձրացման հնարավորությունները: Կենսական անհրաժեշտություն է, որ իսկական զինվորական ծառայության կանչված պատանիները ազատորեն տիրապետեն ռուսերենին:

Բանակի հետ ժողովրդի կապերի ամրապնդման գործում մեծ է ԴՕՍԱԱՖ-ի շրջանային կոմիտեի, նրա սկզբնական կազմակերպությունների դերը, որոնք ակտիվորեն մասնակցում են երիտասարդների մեջ բարոյաքաղաքական և գործնական բարձր հատկանիշների ձևավորմանը, հատկանիշներ, որոնք անհրաժեշտ են հայրենիքի զինված պաշտպանության խնդիրները լուծելու համար: Նրանց մեծ օգնություն են ցույց տալիս հրամանատարները, քաղաշխատողները, ակումբների խորհուրդները, գրադարանները, պատմության անկյունները:

Պաշտպանական-մասսայական աշխատանքի ամենամյա միամսյակների օրերին սովետական բանակի և ռազմածովային նավատորմի տարեդարձի պատվին զորակոչիկների և բարձրդասարանցիների համար կազմակերպվում են բաց դռների օրեր, հանդիպումներ ռազմական գործի գերազանցիկների և վարպետների հետ, տեխնիկայի, վավերագրական կինոֆիլմերի ցուցադրումներ, ռազմասպորտային խաղեր, էստաֆետներ, ցերեկույթներ, երեկոներ, գեղարվեստական ինքնագործունեության համերգներ:

Միամսյակի օրերին ուսումնական հաստատությունների և նախադպրոցական հիմնարկների կոլեկտիվներն իրենց մոտ են հրավիրում հանրապետությունում գտնվող զորամասերի զինվորներին: Նրանց համար կազմակերպվում են էքսկուրսիաներ ձեռնարկությունները, հանդիպումներ արտադրության առաջավորների, կուսակցության, պատերազմի և աշխատանքի վետերանների հետ: Այդպիսի կապերն օգնում են արդյունավետորեն օգտագործելու ամենաբարենպաստ հնարավորությունները երիտասարդների մեջ դաստիարակելու հպարտության զգացում սովետական ժողովրդի սխրագործությունների հանդեպ, պայմաններ ստեղծում ռազմահայրենասիրական դաստիարակության, զորակոչային տարիքի երիտասարդությանը ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում ծառայելուն նախապատրաստելու խնդիրները առավել հաջողությամբ լուծելու համար:

Շրջանում ռազմաշեֆական կապերն ամրապնդելու գործում մեծ ավանդ է մուծում ԼԿԵՄ շրջկոմը: Կոմերիտմիության շրջկոմին առընթեր գործում է ինտերնացիոնալ բարեկամության ակումբ, իսկ սկզբնական կազմակերպություններին առընթեր՝ 91 ակումբ, որոնք միավորում են ավելի քան 2400 ՀամԼԿԵՄ անդամների: Նրանք նամակագրական կապեր ունեն 490 հասցեներով, որոնցից 150-ը հանրապետության սահմաններից դուրս, 5-ը՝ սոցիալիստական երկրների հետ:

ԼԿԵՄ շրջկոմը ստանձնել է ինտերնացիոնալիստ զինվորների շեֆությունը: Աֆղանստանի հանրապետությունում ծառայություն անցած զինվորների հերթական խորհրդակցությունում ստեղծվեց խորհուրդ, որը հետաքրքրական աշխատանք է կատարում: Շրջկոմը հասել է այն բանին, որ ինտերնացիոնալիստ զինվորները օգտվեն օրենքով նախատեսված արտոնություններից, ապահովվեն աշխատանքով, ակտիվորեն մասնակցեն ռազմահայրենասիրական աշխատանքին, նրանցից առավել արժանավորներին երաշխավորում են դըպրոցների զինղեկ:

Հետաքրքրական շատ նորամուծություններ են կիրառվում շրջանում բանակ ճանապարհելու արարողությունը կազմակերպելիս: Ավանդական է դարձել քաղաքում զորակոչիկի օրվա անցկացումը: Գյուղերում ծնվել են յուրատեսակ արարողություններ՝ կապված այդ իրադարձության հետ: Զինված ուժեր մեկնողներին ջերմորեն ողջերթ են մաղթում կուսակցական, սովետական և կոմերիտական աշխատողները, կուսակցության, պատերազմի և աշխատանքի վետերանները, արտադրության առաջավորները, պահեստի երիտասարդ զինվորները, սովորողները: Երիտասարդության հանդիսավոր ճանապարհումները զինվորական ծառայության վերածվում են բանակի և ժողովրդի անխախտ միասնության իսկական ցույցի:

Բանակի և ժողովրդի բազմազան շեֆական կապերի զարգացումը, ինչպես ցույց է տալիս փորձը, երկմիասնական պրոցես է: Մի կողմից, աշխատավորության փառավոր ավանդույթների, հաջողությունների պրոպագանդան ոգեշնչում է զինվորներին զինվորական պարտքը օրինակելիորեն կատարելու համար, բարձրացնում է նրանց ակտիվությունը, պատասխանատվության զգացումը՝ զենքը ձեռքին ելնելու իր հայրենիքի պաշտպանությանը: Մյուս կողմից տեղի է ունենում զինվորական կոլեկտիվների հետագա մերձեցում աշխատավորական կոլեկտիվների և զորակոչային տարիքի աշակերտների հետ: Դա հսկայական բարերար ազդեցություն է թողնում բանվորների, կոլտնտեսականների, հատկապես երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության վրա, բարձրացնում նրանց պատասխանատվությունը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար:

Կուսշրջկոմի ղեկավարությամբ կուսակցական, կոմերիտական և մյուս կազմակերպությունների ծավալած ամբողջ կազմակերպչական և գաղափարադաստիարակչական աշխատանքը նպաստում է առողջ բարոյահոգեբանական մթնոլորտի ձևավորմանը, սոցիալական արդարության հաստատմանը, կուսակցության XXVII համագումարի և Կենտկոմի հետհամագումարյան պլենումների, XIX համամիութենական կուսկոնֆերանսի որոշումների անշեղ կենսագործմանը, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար երիտասարդության բազմակողմանի նախապատրաստմանը:

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՃԻ ՉԱՓԱՆԻՇՆԵՐԸ

ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արդի փուլում աշխատանքի արտադրողականության բարձրացման պրոբլեմի հրատապությունը մեծապես աճում է: Դա նախ և առաջ պայմանավորված է դեպի արտադրության ինտենսիվացում կտրուկ շրջադարձի ապահովման անհրաժեշտությամբ: Մենք այսօր կրկին ու կրկին անդրադառնում ենք Վ. Ի. Լենինին, և մեզ համար միանգամայն նորովի են հնչում նրա հանրահայտ խոսքերը. «Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (ԵԼԺ, հ. 39, էջ 25): Առաջնորդվելով լենինյան այդ դրույթով, կուսակցությունը, սովետական պետությունն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում աշխատանքի արտադրողականության աճի արագ տեմպերի ապահովմանը:

Աշխատանքի արտադրողականության բարձրացումն ունի թե՛ տնտեսական, թե՛ սոցիալական վիթխարի նշանակություն: Արտադրողականությամբ է պայմանավորվում և՛ արտադրության աճը, և՛ բնակչության կենսամակարդակի բարձրացումը: Արտադրության ինտենսիվացման պայմաններում էլ ավելի է մեծանում արտադրողականության բարձրացման, դրա աճի արագացման դերը: Ինչպես հայտնի է, տասնմեկերորդ հնգամյակում մեզ մոտ պարզորոշ նկատվեց աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի զգալի նվազման միտում: Բարվոք չէր նաև արտադրության արդյունավետության ցուցանիշների՝ ֆոնդահատույցի, արտադրանքի նյութատարության դինամիկան:

Ստեղծված իրավիճակը պահանջում է հանգամանորեն վերլուծել աշխատանքի արտադրողականության աճի արագացումը խոչընդոտող պատճառները, բացահայտել դրանց հաղթահարման ուղիները և աշխատանքի արդյունավետության բարձրացման ռեզերվները:

Տեսական և գործնական մեծ հետաքրքրություն է ներկայացնում աշխատանքի արտադրողականության աճի կառավարման համակարգի բնութագրության, դրա կատարելագործման պրոբլեմը: Այն ներառում է աշխատանքի արտադրողականության մակարդակի գնահատման, պլանավորման, նյութական խթանման հրատապ հարցերը:

Տնտեսագիտական գրականության մեջ վաղուց է քննարկվում, մասնավորապես, հասարակական (ամբողջական) աշխատանքի արտադրողականության քանակական գնահատման ու դրա գործնական կիրառության խնդիրը, որն առ այսօր բանավիճային է: Էկոնոմիկայի ինտենսիվացման կուրսն այն ավելի է սրում, քանի որ վերաբերում է արտադրության արդյունավետության ամփոփ գնահատմանը:

Տնտեսավարման նոր պայմաններում նոր պահանջներ են ներկայացվում արտադրողականության աճի նյութական խթանման համակարգին և պլանավորմանը:

Առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման պայմաններում աշխատանքի արտադրողականության և միջին աշխատավարձի աճի հարաբերակցության պլանաչափ կարգավորման հարցը: Այդ պրոբլեմներին են նվիրված առանձին աշխատություններ ու մենագրություններ, դրանք լայնորեն քննարկվեցին վերջին տարիներին երկրում ծավալված գիտական բանավեճի ընթացքում: Սակայն հետազոտվող պրոբլեմի բարդության և բազմակողմանիության պատճառով աշխատանքի արտադրողականության կատեգորիայի էության տեսական բնորոշման, նրա ցուցանիշների և չափանիշների գնահատման մի շարք ասպեկտներ մինչև օրս տակավին մնում են վիճելի:

Այս առումով ուշագրավ է տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր Յու. Սուվարյանի «Աշխատանքի արտադրողականության աճի կառավարումը արդյունաբերության մեջ» աշխատությունը, որտեղ վերլուծված են աշխատանքի արտադրողականության կառավարման համակարգի տեսական, մեթոդական և գործնական հրատապ հարցերը, մշակված են աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության աճի արագացման կոնկրետ հանձնարարականներ, վերլուծված են արտադրության ինտենսիվացման պայմաններում աշխատանքի արտադրողականության աճի, բնակչության ռեալ եկամուտների և միջին աշխատավարձի հարաբերակցության մեթոդական և գործնական հարցերը:

Հեղինակն արժեքավոր հարցադրումներ է կատարում ամբողջական աշխատանքի արտադրողականության կատեգորիայի բնութագրման, դրա ցուցանիշների քանակական արտահայտման, արտադրության ինտենսիվացման մակարդակի վերաբերյալ: Մենագրության մեջ, մասնավորապես, հիմնավորվում է այն տեսակետը, որ հասարակական-տնտեսական զարգացման արդի փուլում աշխատանքի ընդհանուր ծավալում խիստ մեծանում է դրա առարկայացած տարրի բաժինը, ինչպես նաև նշանակությունը սպառողական արժեքների արտադրության համար: Հեղինակը գտնում է, որ անհրաժեշտ է աշխատանքի արտադրողականության կատեգորիան և ցուցանիշը դիտարկել ոչ միայն կենդանի, այլ նաև ամբողջական (կենդանի ու առարկայական) աշխատանքի նկատմամբ: Այդպիսի մոտեցումը հնարավորություն է տալիս գնահատել արտադրության պրոցեսում կիրառվող միագումար աշխատանքի արդյունավետությունը: Ամբողջական աշխատանքի արտադրողականության կատեգորիայի բազմակողմանի բնութագրության հիման վրա առաջարկվում է դրա քանակական արտահայտման հիմնավոր մեթոդիկա: Այնուհետև, դրա փորձարկման ընպատակով, հաշվարկվում է ամբողջական աշխատանքի արտադրողականությունը մեր հանրապետության ժողովրդական տնտեսության և մասնավորապես, արդյունաբերության մեջ, վերլուծվում դրա դինամիկան: Առանձնապես արժեքավոր է ամբողջական աշխատանքի արտադրողականության աճի վերլուծության պլանավորման և նյութական խթանման հիմունքների մշակումը: Դա հնարավորություն է ընձեռում նորովի մոտենալ ժողովրդական տնտեսության տարբեր օղակներում արտադրության ինտենսիվացման մակարդակի գնահատմանը, որը մինչև այժմ կատարվում է ըստ արտադրության ծավալի հավելաճում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեսակարար կշռի: Այս դեպքում հաշվի է առնվում միայն մի արտադրական ռեսուրսը՝ կենդանի աշխատանքը, դուրս թողնելով արտադրության պրոցեսին մասնակցող նյութական ռեսուրսները, հիմնական ֆոնդերը, կապիտալ ներդրումները: «Արտադրության պրոցեսում աշխատանքային և նյութական ռեսուրսները կիրառվում են տարբեր աստիճանի արդյունավետությամբ. երբեմն ռեսուրսներից մեկի հարաբերական տնտեսման պայմաններում կատարվում է մեկ այլ ռեսուրսի հարաբերական գերածախս: Ուստի արտադրության մեջ ինտենսիվ գործոնները, այսինքն արտադրության ինտենսիվացման աստիճանը, պետք է բնորոշել արտադրանքի աճի և աշխատանքի միագումար ծախսումների համադրությամբ» (էջ 130): Ըստ այդ մեթոդիկայի, արտադրության ինտենսիվացման մակարդակը հարկ է գնահատել՝ հաշվի առնելով թողարկվող արտադրանքը և օգտագործված բոլոր արտադրական ռեսուրսները:

Այստեղ զարգացվում է այն գաղափարը, որ բնակչության ռեալ եկամուտների և միջին աշխատավարձի փոփոխությունները անհրաժեշտ է համադրել ինչպես աշխատանքի արտադրողականության, այնպես էլ արտադրության արդյունավետության ընդհանրական ցուցանիշների հետ, քանի որ արտադրության ինտենսիվացման պայմաններում աշխատանքի վարձատրության չափը պայմանավորված է թե՛ աշխատանքի քանակով ու որակով, թե՛ արտադրական ռեսուրսների օգտագործման աստիճանով: Ուստի, լրիվ տնտհաշվարկի և ինքնաֆինանսավորման անցնելիս այդ խնդիրը դառնում է խիստ հրատապ, պահանջում է արտադրության նյութական խթանման ողջ համակարգի արմատական վերակառուցում, այն նպատակամղելով դեպի վերջնական արդյունքները: Գրքում շարադրված են հեղինակի ուսումնասիրությունների արդյունքները աշխատավարձի խթանիչ դերի բարձրացման, աշխատանքի նորմավորման կատարելագործման, աշխատավարձի նորմատիվային պլանավորման արդյունավետության բարձրացման վերաբերյալ:

Տնտեսական նոր մեխանիզմի պայմաններում աշխատավարձի ֆոնդը ձևավորվում է ինչպես նորմատիվային, այնպես էլ մնացորդային եղանակներով: Այստեղ գործնական առումով կարևորվում է աշխատավարձի ծախսման երկարաժամկետ նորմատիվների մշակումը, դրանց սերտ կապակցումը աշխատանքի արտադրողականության հետ: Մենագրության մեջ ա-

առաջարկվող մեթոդիկայով տնտեսավարման յուրաքանչյուր օղակի համար կարելի է հաշվարկել արտադրանքի միավորի նկատմամբ աշխատավարձի ծախսման պլանային նորմատիվը՝ ելնելով միջին աշխատավարձի և աշխատանքի արտադրողականության վրա ազդող գործոններից:

Միաժամանակ հարկ է նշել, որ քննարկվող աշխատությունը զերծ չէ նաև թերություններից: Անկասկած, տնտեսական ու սոցիալական պլանավորման կատարելագործման ուղղություններից մեկը ընթացիկ և հեռանկարային պլանավորման զուգակցումն է: Մինչդեռ աշխատության մեջ անհրաժեշտ լուսաբանում չեն ստացել աշխատանքի արտադրողականության աճի երկարաժամկետ պլանավորման (պրոգնոզավորման) մեթոդիկան և գործնական հարցերը:

Աշխատությունը կշահեր, եթե հեղինակն օգտագործեր սոցիոլոգիական հետազոտությունների տվյալներ: Չէ՞ որ աշխատանքի արտադրողականության դինամիկան մեծապես պայմանավորված է սոցիալական գործոններով, իսկ դրանց ազդեցությունն արտադրողականության ցուցանիշի վրա կարող է բացահայտվել ընտրանքային սոցիոլոգիական հետազոտությունների միջոցով և դրանց արդյունքների վերլուծությունը, անշուշտ, կհարստացներ մենագրությունը:

ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումի լույսի ներքո աշխատանքի արտադրողականության և առհասարակ արտադրության արդյունավետության բարձրացման պրոբլեմների լուծումը հանրապետության արդյունաբերությունը լճացման երևույթների նստվածքներից զերբազատելու, արմատացած բացասական երևույթները կանխարգելու և էկոնոմիկայի առողջացման պրոցեսն առաջ մղելու կարևոր գրավականն է: Բավական է ասել, որ հանրապետությունում հանրային աշխատանքի արտադրողականության աճի տարեկան միջին տեմպերը ընթացիկ հնգամյակում նախորդի համեմատությամբ ցածր են 2,1 անգամ, մեծացել է ազգային եկամտի ֆոնդատարությունը և հասարակական արդյունքի նյութատարությունը, որի հետևանքով նվազել են ամբողջությամբ վերցրած ազգային եկամտի աճի տեմպերը: Ընթացիկ տարվա անցած ինը ամսում թողարկված արտադրանքի հավելաճը կազմել է միայն 2,5 տոկոս՝ անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի 4,3 տոկոսի դիմաց: Առանձնապես անմխիթարական վիճակ է ստեղծվել մեքենաշինական համալիրում, որտեղ թույլ է տրված արտադրության ծավալների և աշխատանքի արտադրողականության 1,4 տոկոս անկում: Վիճակը շտկելու համար լուրջ ջանքեր են պահանջվում: Աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացման ուղին գիտատեխնիկական առաջադիմության արագացումն է՝ տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատական վերափոխումների, տեխնիկական, կազմակերպական, տնտեսական ու սոցիալական բոլոր գործոնների մոբիլիզացման հիման վրա:

Այսօր տնտեսական շինարարության հանգուցային պրոբլեմը աշխատանքի արտադրողականության արմատական բարձրացումն է և այդ ասպարեզում համաշխարհային բարձրագույն մակարդակին հասնելը: Կուսակցության XXVII համագումարը խնդիր է դրել մինչև 2000 թվականը հասարակական աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել երկուսուկես անգամ և արտադրության առավելապես ինտենսիվ զարգացման հիման վրա արագացնել երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի տեմպերը: Կազմակերպական և սոցիալ-տնտեսական ապահովման հետ մեկտեղ այդ խնդրի լուծումը պահանջում է տնտեսագիտական լուրջ և համակողմանի օժանդակություն: Այդ նպատակին է ծառայում գրախոսվող արժեքավոր աշխատությունը:

**Ս. ՀՈՎՍԵՓՅԱՆ**

# ՑԱՆԿ

## 1988 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 118-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻՆ ԸՆԴԱՌԱՋ



## ԽՈՍՈՒՄ Է ԿՈՆՖԵՐԱՆՍԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԸ



## ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄ. ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

# ԸՆԿԵՐՈՋ ՀԻՇԱՏԱԿԻՆ



Կյանքի 59-րդ տարում հանկարծամահ եղավ տաղանդավոր լրագրող, «Լենինյան ուղիով» ամսագրի պատասխանատու քարտուղար, խմբագրական կոլեգիայի անդամ ՌՈՒԲԵՆ ԲԱԳՐԱՏԻ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԸ:

Ռուբեն Կարապետյանը ծնվել է 1929 թ. Ղափանի շրջանի Ծավ գյուղում: Ավարտելով տեղի դպրոցը, նա ուսումը շարունակել է Երևանի հայկական մանկավարժական ուսումնարանում, 1950 թվականին ընդունվել և 1955 թվականին ավարտել է Երևանի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետի ժուռնալիստիկայի բաժինը: Իր աշխատանքային գործունեությունը սկսել է Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում իբրև բազմատպաքանակ թերթի պատասխանատու քարտուղար: 1958 թ. մինչև 1972 թ. «Հայաստանի աշխատավորուհի» ամսագրի բաժնի վարիչն էր: Այնուհետև աշխատել է «Հայրենիքի ձայն» շաբաթաթերթում, 1974 թ.՝ «Լենինյան ուղիով» ամսագրում, սկզբում որպես մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժնի վարիչ, 1975 թ.՝ պատասխանատու քարտուղար:

Ռ. Կարապետյանի ժուռնալիստական ընդունակությունները առանձնապես վառ դրսևորվեցին «Լենինյան ուղիով»-ում աշխատելու տարիներին: Նրան բնորոշ էին կազմակերպական ձիրքը, պահանջկոտությունը իր և աշխատակիցների նկատմամբ, բարձր պրոֆեսիոնալիզմը, գաղափարատեսական պատրաստվածությունը: Նրա գրչին են պատկանում բազում հրապարակումներ, որոնք աչքի են ընկնում նյութի խորիմացությամբ, կատարման վարպետությամբ: Ռ. Կարապետյանը հմուտ թարգմանիչ էր:

Իր բարեխիղճ ու նախաձեռնող գործունեության շնորհիվ նա վայելում էր շրջապատի սերն ու հարգանքը: Ընտրվել է հանրապետության ժուռնալիստների միության վերստուգիչ հանձնաժողովի նախագահ, ՍՍՀՄ ժուռնալիստների միության վերստուգիչ հանձնաժողովի անդամ:

Ռ. Կարապետյանի՝ վաստակաշատ ժուռնալիստի, ազնիվ ու անաղարտ կոմունիստի և քաղաքացու պայծառ հիշատակը միշտ վառ կմնա մեր սրտերում:

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈԼԵԿՏԻՎ

Հանձնված է շարվածքի՝ 17. 11. 88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 27. 12. 88 թ.: ՎՖ 04087: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ օֆսեթ, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 15.532: Պատվեր՝ 1739:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: